Հրատ. Բագուայ Հայոց Կուլտուրական Միութեան
Հրատարակչական մասնաճիւղի № 9.
Բանաստեղծ. գրքերի շար № 1.






*Միայն այն կ'ապրի, որ միշտ է անմահ—*
*Սուրբ գեղեցկութիւն եւ սուրբ գաղափար.*
*Վեհ միտքը ազատ կենդանի կը մնայ*
*Ու սէրն անձնազոհ՝ խեղճ եղբօր համար...*

# ԱՇՈՒՂ

Ասի՝ աշո՛ւղ, ա՛ռ չունգուրըդ, մեզ բան ասա՛
սրտալի·
Կարօտ ենք քու անուշ ձէնին, մի բան ասա՛
սրտալի·
Սրտի խօսք ենք ուզում քեզնից, որ վեր հանի
մեր հոգին—
Ա՛ռ չունգուրըդ, դարդո՛տ աշուղ, մեզ բան ասա՛
սրտալի։

Գիտենք, որ դու միշտ տանջւում ես հազար ու
մի ցաւերով,
Հայրենիքիդ խոր խոցերը համարում ես դարերով·
Չես լուանայ էդ խոցերը արտասունքի ծովերով…
Ա՛ռ չունգուրըդ, ցաւո՛տ աշուղ, մեզ բան ասա՛
վշտալի։

Լուռ մընալով մեր վէրքերին դու չես անի դեղ
դարման.
Արար–աշխարհք գիտի՝ չըկայ մեր դարդերին չափ,
սահման.
Մնջութիւնն էլ նըշան հօ չէ՞ մի գովելի յատ-
կութեան—
Ա՛ռ չունգուրըդ, մեզ բան ասա, թող խօսքդ ըլնի
ցաւալի։

Էդպէս խօսքեր շատ ենք լսել, էլ կըլսենք ան-
տըրտունջ,
Մեր չըխօսկան ըլնելուցն է՝ մընացել ենք ան-
տէրունջ.
Լաւ է ապա լաց ըլնիլը, քանց դարդ տանիլն
անմռունչ,
Ասա՝ լսենք, ի՞նչ անենք, որ խօսքըդ կ'ըլնի ող-
բալի։

Տեսնում ես, որ մենք թմրած ենք, քունն անուշ
է մեզ թըւում.
Է՞ր ես դու էլ մեզ բոլորիս մաշող քընիցն յաղ-
թըւում.
Ա՛ռ չունգուրըդ, տո՛ւր լարերին, կըրակ վառիր
մեր սրտում,
Մեզ ամէնիս նոր շունչ տուող մի բան ասա
սրտալի։

———**———



* * *

Ո՛վ իմ խղճուկ կեանք, խառնուրդ սոսկալի
Մանուկ հաւատոյ, չար երկբայութեան,
Անուշ պատրանաց, խոկմանց վշտալի,
Ե՛ւ յստակ սիրոյ, և՛ ատելութեան.
Խաղալիք ես դու նենգաւոր բաղդի,
Հողմավար նաւակ ալեծուփ ծովում,
Անհանգիստ թռչնակ մի վտարանդի,
Պարզամիտ տղայ փորձութեան բովում . . .

Որպէս խռովայոյզ լեռնային վտակ,
Գլորւում ես առաջ արագ, անդադար.
Ալիքդ անհամբեր քերելով յստակ՝
Ողբում են, իբրև պանդուխտ վշտահար։
Քեզ չեն կանգնեցնում քո դալար ափեր,
Որ սիրով գըկած սահանքդ ալեկոծ,
Անուշ հանգստեան կարդում են հրաւէր,
Կանչում են գարնան սիրուն ծաղկանց ծոց։

Եւ ես կանգնած եմ անհա բընութեան
Հրաշալեաց առաջ, մոլորուած մտքով.
Չէ՛, ինձ համար չեն այս գեղեցկութեան
Բոլոր հրապոյրներ իրենց պատրանքով...
Հոգիս լի ցաւով՝ նայում եմ միայն,
Թէ ուր են թռչում սրընթաց ալիք,
Եւ գէթ պիտի տա՞ն ինձ մի պատասխան
Սըլացող կեանքիս կոհակներ գալիք։





## Մ—ին

Կ'ուզէի լինել կարկաչուն վտակ,
Վճիտ ալիքը դըրախտի բուրմունքով,
Եւ առաւօտեանն, ինչպէս ցօղ յատակ,
Երեսդ ոռոգել գոհար շիթերով։

Կ'ուզէի լինել սօսի հովասուն,
Համարձակ փռուած կանաչ սաղարթով,
Եւ միջօրէին այդ դէմքիդ սիրուն
Հովանի լինել հեզիկ շըշիւնով։

Կ'ուզէի լինել ծաղկոցում բացուած
Քաղցրաբոյր մի վարդ, երկնից արժանի,
Եւ սիրոյ ժամին, խանդից արբած,
Զարդարանք լինել կուրծքիդ գեղանի։

Եւ շող դառնալով գարնան արևի՝
Կ'ուզէի պայծառ աչերումդ վառուել,
Կամ ինչպէս քնքուշ ոսկեվառ գօտի
Զքնաղ իրանիդ փաթաթուել, փարել։

Լուսափայլ աստղիկ կ'ուզէի դառնալ,
Քաղցր մանկան պէս ծիծաղն երեսին,
Ինչպէս ադամանդ շողշողել, ցոլալ,
Ո՛վ իմ Թագուհի, քո բաց ճակատին։

Կ'ուզէի լինել լուսին ամօթխած,
Արծաթի փայլով մազերըդ շոյել,
Այտերըդ գգուել, սիրուց բորբոքուած,
Դողդոջ շրթունքիդ համբոյրներ դրոշմել։

Կ'ուզէի լինել սիրահար սոխակ
Եւ ձեռիդ գերի, վանդակում փակուած,
Ականջիդ հնչել հրաշալի նըւագ,
Մեղմ օրօր ասել քո հոգուն զմայլուած։

Եւ կախարդական տաճարում կանգնած
Կ'ուզէի տեսնել ես քեզ Անահիտ,
Եւ երկրպագել, առաջիդ չոքած,
Սուրբ գեղեցկութեան անմահ տիպարիդ։





* * *

Որպէս յաղթանդամ մի ծերուկ հսկայ,
Կախուած է ժայռը ջրերի վրայ.
Ալիքը կայտառ գնում են, գալիս
Եւ ժայռին սիրոյ համբոյր են տալիս։

Խաղում են անհոգ ալիքը գետի,
Ցուցնում են գրկած պատկերն արևի,
Եւ, որպէս մանուկ ժպիտն երեսին,
Մեղմիկ շշունչով խօսում են ժայռին.

«Լսի՛ր, ծերունի՛, ինչո՞ւ ճակատիդ
Սև կնճիռները չեն տալիս դէմքիդ
Մի օր խնդութեան շողով ցոլանալ—
Ողջը փոխուում է, դու նոյնն ես դարձեալ։

«Ազատ լեռների ազատ զաւակներ,
Մենք քեզ բերել ենք անթիւ գոհարներ.
Երկնքի դաշտեր—վարդի լեռնասուն
Կը ցօղենք կուրծքիդ անուշհոտութիւն։

«Մենք երանաւէտ քնքուշ նուագով
Կը կոչենք խորքից ձկներն երամով
Եւ ոսկէզօծուած գարնան արևից
Քեզ մեր զուարթ պարին կ'անենք խնդակից։

«Եւ քո ականջին միշտ սիրոյ երգեր
Մենք արշալուսից կ'ասենք մինչ աստղեր,
Եւ քեզ կը փարենք և քո ծեր կուրծքին
Մենք հանգչել կըտանք մեր քաղցըր կըքին...»

Ալիքը կայտառ գնում են, գալիս,
Սև ժայռը նախկին իւր վիշտն է լալիս...
Խաղում են ալիք, ուրախ կարկաջում—
Նա կրկին անշարժ, նա կրկին տրտում...





## ԱՒԵՐԱԿ

Որպէս վաղեմի մի աւանդութիւն
Կամ շքեղ երազ անմեղ մանկութեան,
Կենդանանում է այսօր իմ մտքում
Խրոխտ աւերակն նախնեաց մեծութեան.
Այստեղ բեկորներ վսեմ արուեստի,
Այնտեղ յիշատակն արքունի փառաց,
Եւ վկայարան սրբազան ուխտի,
Եւ տխուր հետքը մեծաշուք կենաց...

Ո՜հ, այսպէս ողջ մեր կեանքն է վաղանցիկ,
Ողջը լոկ ծաղր է անսիրտ բնութեան.
Եւ սէր, և հրճուանք, համայն գեղեցիկ
Զոհ է աւերի և մոռացութեան։
Ինչպէս պատրանքը հեշտասիրութեան,
Ինչպէս գրգիռը պատանու արեան,
Խաբուսիկ ժպիտն աշնան արևու,—
Բոլորը վաղն է անհետանալու։



* * *

Ա՜խ, տուէք ինձ քաղցրը մի քուն,
Կեանքից հեռու սըլանամ
Այն աշխարհը, ուր խնդութիւն,
Ուր սէրն է միշտ անթառամ։

Քնքուշ վարդերն ինձ բարձ լինին,
Վառ կանաչից իմ վերմակ,
Նոցա բոյրը զըւարթացին
Ծծեմ անվերջ ես անյագ։

Եւ խայտալով իմ առաջին
Վտակն անուշ խոխոջէ,
Մի թարմութիւն եդեմային
Զորս բոլորքս տարածէ։

Եւ ինձ ժպտի արշալուսին
Գարնան մատաղ արեգակ,
Եւ գիշերով իմ ճակատին
Խաղայ գողտրիկ վառ լուսնակ։



Եւ աչագեղ կոյսն ականջիս
Իւր մեղեդին մեղմ հնչէ,
Եւ հերարձակ՝ սիրով վըզիս
Փարէ քնքուշ, փաղաքշէ . . .

Եւ յաւիտեան վայելչութիւն
Գրկէ հոգիս, չյագենամ . . .
Ա՜խ, տուէք ինձ քաղցրը մի քուն,
Հեռու, հեռու սըլանամ։



## ԳԻՇԵՐՈՒԱՆ ԵՐԳԸ

Տխուր նստած եմ սենեկում փակուած
Եւ հազար մի վիշտ սիրտըս են նեղում . . .
Դուրսը մութն է, ցուրտ․ քամին կատաղած
Իմ լուսամուտը ծեծում է, ծեծում։

Զարտամնջ պանդուխտ, քամի՛ դու ձմրան,
Ի՞նչ ես կամենում․ ինչո՞ւ անհանգիստ
Պատեցնում ես տարափները ձեան․
Ի՞նչ ես դու երգում․ այդ սէ՞ր է թէ վիշտ։

Թէ թեւաւորուած, իբրև փրկութեան
Լուսաւոր ոգի, բերում ես դու լուր
Սիրուն հայրենեաց քաղցր ազատութեան,
Թէ՞ սարուկ հայի հառաչանք տխուր։

Արդեօք փախե՞լ ես, իբրև խորթ զաւակ
Զարչարուած անմիտ հալածանքներից,
Թէ՞ չէ ձանձրացած դու կեանքից դատարկ
Վազում ես կորած բաղդի յետևից։



Թէ փաղաքշե՞լ ես նազելի շնչով
Դու շուշանազեղ կուրծքն օրիորդի,
Կամ թէ շփե՞լ ես կոշտացած ձեռով
Խոր կնճիռները անբաղդ ծերունի . . .

Արդեօք եկա՞ծ ես դու այն աշխարհից,
Ուր փարթամ ծաղկած մշտական գարուն,
Ուր ջինջ կապոյտը միշտ պայծառ երկնից
Վառ ցոլանում է առուում պաղպաջուն . . .

—Հայրենի երկրից ես, իբրև գուժկան,
Թռչում եմ սփռել հայրենի ցաւեր․
Թող բոլոր աշխարհն հայի գերութեան
Տեմնէ դարաւոր անլոյծ կապանքներ։

Ես արիւնաներկ լայն հովիտներից
Նուէր եմ բերում ոչ փնջեր վարդի,
Այլ ահեղ պըսակ, պըսակ փըշալից,
Որ զարդարում է ճակատը հայի։

Ես սլանում եմ չորցած դաշտերից,
Ուր հին աւերակ նոր աւերակին
Միշտ տեղ է տալիս, բոլոր կրծքերից
Լոկ հառաչանք է թռչում դառնագին․

Ուր չըկայ անգուսպ կրքերին սահման,
Ուր օր ու գիշեր խիստ դատավճռին
Սպասում են անթիւ զոհեր բռնութեան,
Ուր չըկայ ժըպիտ մէկի երեսին։

Այնտեղ թօշնում է վարդը կոկոնում,
Չըտեսած շողը ոսկի արեւու . . .
Եւ արդեօք Երբ է այն թշուառ երկրում
Փրկութեան գարուն նորից ծաղկելու։





* * *

Գեղեցիկ օրեր, ծաղկավառ օրեր,
Իմ ցնորամիտ պատանեկութեան,
Գիտեմ որ շուտով չարագոյժ ամպեր
Կը պատեն երկինքն իմ սիրուն գարնան.
Գիտեմ, որ արեւն, որ հիմա պայծառ
Ծիծաղում է ինձ, պատիր յոյսերով
Լոկ խոստանում է իմ կեանքի համար
Ծաղիկ բուսցընել ոսկէ շողերով։

Եւ այն բոլորը, ինչ ինքնահաւան
Ստեղծում է միտքըս վառուած բորբոքուած,
Չըքանալու է շուտ ծուխի նըման.
Եւ այն պատկերը սիրած փայփայած,
Որ մխիթարն է ամայի կեանքիս,
Գիտեմ պիտ ցնդի, ինչպէս մի երազ
Յուզուած ուղեղի, որ ցոյց է տալիս
Երբեմն անբաղդին մի վիճակ անհաս։

Բայց դարձեալ քա՜ղցր էք, գեղեցի՜կ օրեր,
Ընտանի՜ սրտիս... Ո՞վ գիտէ յետոյ
Իմ տանջուած հոգին ինչ նոր նոր ցաւեր
Դեռ պիտի տեսնէ. ծաղիկը սիրոյ
Որ հիմա թօշնած մի հիւանդ ժպտով
Դեռ նայում է ինձ, արդեօք ընաւին
Պիտի չըմեռնի՞... գուցէ և շուտով
Լուռ փոթորիկը ճայթի իմ գլխին։

Լուղորդի նըման ես ծովն եմ ընկնում—
Արդեօք միւս ափն ինձ պիտի հանե՞ն
Գոռ ալիքները... գինուորը կռուում
Գիտէ՞ իրանցից ո՛յք պիտի ապրեն...
Գոնէ դեռ շքեղ երազներ հիմա
Ազնիւ վայելքի բերում են ժամեր.
Ա՜խ, օրհնեա՜լ լինիք, ձեզ չեմ մոռանայ,
Գեղեցի՜կ օրեր, ծաղկավա՜ռ օրեր։







## ԱՒԵՏԱՐԱՆ

Ամէն անգամ, երբ թերթում եմ
Ես էջերը Սուրբ Գրքի,
Միշտ վշտացած մտածում եմ—
Ո՞ւր է սէրը մարդերի,
Որ Փրկիչը սուրբ կտակով
Մարդկութեանը աւանդեց,
Խաչի վերայ իւր արիւնով
Գիր կենդանի դըրոշմեց։

Մարդիկ վաղուց մոռացել են
Խաչն ու քարոզ կենդանի,
Աւետարանն ուրացել են,
Էլ Սուրբ Գիրքը գին չունի.
Ամենայն գիրք միշտ կարդում են,
Սիրոյ գիրքը չըկամին.
Ո՞ւր, չըգիտեմ, որոնում են
Բախտը իրանց խեղճ կեանքին...



## ՍԻՒՆԵԱՑ ԻՇԽԱՆԸ

«. . . և նա ըստ առաջին կարգի օրինացն արքունի արկանէր զպատուական հանդերձն զոր ունէր 'ի թագաւորէն . . . և զամենայն օրէնս պատուոյն զանձամբ արկեալ՝ երթայր յարքունիս. շքեղ և երևելի քան զամենեսեան երևէր բազմութեանն»:

Եղիշէ, Եղանակ Է.

Արեան փայլով, տանջանքներով անմահացած,
Ինչպէս ցընորք երևում են օրերն անցած.
Ես չեմ կարող նոցա նայել լուռ պարծանքով,
Այլ մի խորին ցաւակցութեան ըզգացմունքով.—
Ի՞նչ մեզ թողին մեր քաջարի գոված նախնիք.
Լացի՛, ողբի՛ անփառունակ մի հայրենիք . . .
Եւ անձրևը ծաղկապըսակ վառ փունջերի,
Որ մանկական բերկրութիւնով անմիտների
Առաջին ենք մենք տարածում, ես մի նըշան
Համարում եմ մեր փոքր հոգու աղքատու-
թեան.
Շղթան սիրող ըստրուկների մի բազմութիւն—
Ահա՛ նոցա թողած անփառք ժառանգութիւն...



Բայց այդ անցեալի խորին խաւարից
Ահա առնում է հոգումս յարութիւն
Նա, որ մերժուած է բոլոր աշխարհից,
Որի յիշատակն յանդիմանութիւն
Լըսել է միայն: Բայց անէծքների
Անվերջ կարկուտը ինձ չէ շըփոթում.
Սև դըրօշմի տակից մաշուած ճակատի՝
Ես նորա այրող տանջանքն եմ տեսնում:

Ահա նա մենակ, առանց հաշտութեան
Արտասուքների, առանց կարեկից
Մի սիրող սրտի մխիթարութեան,
Հեռու աշխարհի փարթամ խնջոյքից,
Ընկած է բանտի խոնաւ անկիւնում
Գըլուխն ալեզարդ կուրծքին խոնարհած,
Յուսահատութիւն խորտակուած սրտում
Եւ հուրը գըղջման խեղդող արտասուաց . . .
Ընկած է մենակ, և խուլ տանջանքով
Նա իւր ոճիրը, անկումն է ողբում
Եւ յիշողութեան թոյնը նոր ուժով,
Ինչպէս շէկ երկաթ, ուղեղն է այրում . . .

«Հեռո՛ւ աչքիցըս, տաղտո՛ւկ տեսիլներ,
Ծերունի կուրծքըս դըժոխք դարձըրիք.
Հեռո՛ւ աչքիցըս, արիւնոտ ստուեր,
Եւ դու, անողո՛րմ, թըշուառ հայրենիք:
Ո՛հ, ես երջանիկ պիտի լինէի,
Թէ ձեր անէծքը թափէր իմ գլխին

Անեղ դաշտումը մահաւիթ կուլի,
Պղտոր Տղմուտի չարագոյժ ափին . . .
Իսկ այժմ անջատուած արևի շողից՝
Հեծում եմ մենակ բանտումըս խաւար,
Գործած յանցանքըս,—ըստուեր թունալից,
Մի օձ է խայթող իմ հոգու համար . . .

Բայց ինչո՞ւ, ինչո՞ւ. մի՞թէ այլոց պէս
Քեզ, իմ հայրենիք, չըսիրեց Վասակ,
Մի՞թէ քեզ համար սիրտըս աղէկէզ
Պիտի գոհուելու չլինէր ընդունակ . . .

Ո՛չ, ո՛չ. ես մի խեղճ, աններշան ճճի,
Արժանի էլ չեմ լինել քո ոտքին
Կոխելու հողը . . . անէծք դարերի,
Ես օրինակ եմ գալոց սերունդին
Իբրև չարագործ, որից գթառատ
Երկինքն էլ արդէն դարձրել է երես։
Բայց դու, հայրենի՛ք, ինչո՞ւ ես վրհատ,
Մի՞թէ կարող է չար Յազկերտը քեզ
Ճուտի պէս խեղդել իւր մագիլներում,
Ինչպէս մի ուրուր... Դու, թագից զըրկուած,
Մի՞թէ մոռացար փառքըդ անցեալում,
Քո պըսակաւոր արի իշխանաց . . .

Ա՜խ, անցեալ օրերն անմեղ շրջանում . . .
Այն ի՜նչ երջանիկ, քաղցր օրեր էին.
Մի հանդարտ լուսով ճըրագն էր վառուում,



Շուրջըս սիրական որդիք, ամուսին . . .
Ո՜հ, հեռու, սիրո՛ւն, թշուառ զաւակներ,
Ձեր հայրը մեռաւ . . . Ի՞նչ հայր, ես մի՞թէ.
Հեռո՛ւ ինձանից. ձեր հայրն իշխան էր . . .
Ինձ շուտով խորունկ շիրիմ կըփակէ—
Դեռ լայն է բանտըս . . .

—Նոքա փառաւոր
Պայազատեցին անուն, յիշատակ,
Նոքա՛ քեզ բերին մահուան այս սև օր
Եւ բոլորեցին տանջանքի պըսակ
Ալևոր գլխիդ. և դու մոռացա՞ր,
Իմ խե՛ղճ հայրենիք, արեան պալատներ,
Անառակութեան խայտառակ տաճար
Եւ արենապիղծ շամբշոտ գիշերներ . . .
Այդ քո թագազարդ պետերը չէի՞ն։
Եւ դու, ուժասպա՛ռ, վիրաւո՛ր եղնիկ,
Ի՞նչպէս կամեցար պարսիկ առիւծին
Կըրիւ ելանել . . . Անբա՛ղդ հայրենիք,
Արիւնդ հոսում էր հեղեղի նըման,—
Դու նոր վէրքերով մի՞թէ յարութիւն
Կամեցար առնել . . . երեսիդ վըրան
Դեռ չէր ցամաքել արտասուաց առուն—
Մի ժըպիրհ ճակատ դու գոռ վըտանգին
Ցոյց տուիր անահ։ Եւ ի՞նչ. փոխանակ
Օրօր ասելու նիրհող գազանին,
Սոսկալի մարտի զարկեցիր կոչնակ . . .

Եւ քո քաջերը շուտ հաւաքուեցան,
Ինչպէս փեթակի շուրջը մեղուներ,
Մահ տալ, մահ առնել նոքա երդուեցան,
Լինել ողջակէզ բոլորանուէր
Սուրբ ազատութեան սեղանի վրայ։
Եւ ես... ո՜հ, թո՛ղ ինձ, չա՛ր յիշողութիւն,—
Ես էլ մտերիմ քեզ հանդէս ելայ
Կռուին բերելու ոգևորութիւն.
Սուր սըլաք, շանթեր թշնամու գլխին
Շատ տալ աներկիւղ մըտածում էի,
Ես կեանքըս փրկանք փառքիդ սուրբ օրին
Արդէն ցընորուած համարում էի։
Եւ հասաւ ժամը—թնդաց Աւարայր,
Հայոց զէնքերի լըսեց շառաչիւն.
Ասպարէզ եկանք այնտեղ քեզ համար,
Աշխարհ սիրական, թափել յորդ արիւն...

—Բայց ի՞նչ եմ տեսնում. այդ մի՞թէ դուք էք,
Անդի՜ն զաւակներ... Ա՜խ, ծածկէք շուտով
Այդ կուրծքը պատռած. մի՛ մերկացնէք
Մատաղ գլուխներդ ներկուած արիւնով...
Կուրացէք, աչեր. յանդիմանութեան
Այն հուրը չտեսնեմ նոցա աչքերում.
Այն էր, որ վառեց կայծակի նըման
Զարտանջ հոգիս գոռ մարտի դաշտում...

Ի՞նչ... ի՞նչ էք ուզում. Վասակը ձեզ հա՛յր...
Հեռո՛ւ ինձանից, թշուա՛ռ ուրուներ.—



Ահա՛ թշնամին հասաւ գինավառ,
Պատեանի մէջ են դեռ ձեր սուսերներ.
Յառա՛ջ դէպի մահ, փառաւո՛ր օրհաս—
Ահա մեր նուէր քեզ, մա՛յր հայրենիք,
Թող մեր որդիքը կրկնեն հանապազ,
Որ վիճակեցինք մենք մահ երջանիկ...

Նշաւակութեան բանտի անկիւնում,
Յուսահատութեան տառապանքներո՜վ.
Ո՞վ է այդ մահը արդեօք ժառանգում,
Ե՞ս—դաւաճանի անարգ պըսակով...
Առանց սիրելեաց արտասուքների,
Առանց աշխարհի, երկնից հաշտութեան...
Ա՜խ, հանգիստ թող ինձ, տեսի՛լ սոսկալի,
Չէ՛ ներում երբէք բաժին մատնութեան...

Եւ դու, հայրենի՛ք, լսում եմ արդէն,
Կարդում ես ահեղ քո դատավճիռ.
Շրթունքըդ ինձ միշտ պիտի նըզովեն—
«Վասա՛կ, այս ի՞նչ էր որ գլխիս բերիր»...
Ահա կենդանի դու մի կշտամբանք
Կանգնած առաջիս, պըսակըդ փետտած,—
Ես—ապուշ մատնիչ, բաժինըս—տանջանք,
Այս գերեզմանում յաւիտեան փակուած։
—Ո՞վ մատնիչ... Վասա՛կ... շարժուեցէք,
պատեր,

Տե՛ղ, կարկո՛ւտ, մըրրի՛կ, զարկեցէք գլխիս.
Դու, հաւատարի՛մ պողպատ, իմ ընկե՛ր,

Կուրծքըս պատառի՛ր—արիւնը սրտիս
Թող սև հեղեղով հերքըս լըւանայ,
Ճակատիս դըմէ անէծքի կընիք,
Թող դարեր անցնեն, աշխարհն իմանայ—
Անմ՛րդ Վասակը մատնեց հայրենիք» . . .





* * *

Զքնա՛ղ մանուկ, հրեշտա՛կ դէմքով,
Որ մի դրախտ երկնային
Խոստանում ես հուր աչերով
Եւ այդ ժպտովդ հեշտագին,

Թոյլ տո՛ւր կուրծքիդ շուշանագեղ
Յոգնած գլուխըս հանգչի,
Եւ մետաքսի մազեր շքեղ
Լինին նորան հովանի։

Ճաշակել եմ վաղուց արդէն
Ես թոյնն և մեղրը սիրոյ,
Բայց ինձ հանգիստ դեռ տըւած չեն
Արցունք, ժպիտն իմ յուսոյ։

Դու այժմ, իբրև նոր արշալոյս,
Ինձ նոր բախտ ես գուշակում.
Սիրո՛ւն մանուկ, ցաւած հոգուս
Արդեօք դու էլ չե՞ս խաբում։



## 26 ԱՊՐԻԼԻ

Անպտուղ կեանքիս քանիերկու գարուն
Անցան գընացին, որպէս մի վայրկեան . . .
Ինչո՞ւ ապրեցայ, ինչո՞ւ եմ ապրում—
Միտքըս չէ կարող տալ ինձ պատասխան։

Եւ իմ մանկութեան սէրը ցնորամիտ,
Եւ անկեղծ սրտի ոգևորութիւն,
Եւ քաղցր արտասուք, և ոսկէ ժպիտ,—
Ա՜խ, ո՞ւր էք. ո՞ւր է ձեր անուշութիւն։

Գիտութիւնն ինչպէս մի թոյն դանդաղկոտ
Աններկատելի վարակեց հոգիս,
Ինչպէս ցուրտ ձմեռ միտքըս կասկածոտ
Քաղեց, խորտակեց ծաղիկը կեանքիս . . .

Իբրև երերուն եղէգն տատանւում,
Տեսնում եմ պատկերս և սարսափում եմ.
Լսում եմ մարդկան երգերը սրտում,
Անմիտ ու դատարկ, և տաղտկանում եմ . . .



Եւ երջանկութիւնս թէ անդարձ կորաւ,
Փշրուած ինչպէս տխուր փըլատակ,
Թէ անհոգ տաղի ձայնը մարեցաւ,
Եւ մընաց ինձ լոկ նորա յիշատակ,

Գոնէ սրտիցըս հիմա չհեռանար
Նոր ցնորքներիս տխպար սիրելի,
Տանջուած հոգուս մէջ կենդանի մընար
Բուրըն փոթորիկ ազնիւ կըրքերի։



* * *

Դու արտասուում ես և չես ամաչում
Այդ անկեղծ սրտի արտասուքներից,
Եւ գիտես, որ զուր հանգիստ ես խնդրում
Յուսահատութեան տառապանքներից։

Ա՜խ, ո՞ր չար ձեռքը քնքուշ թշերից
Վաղաժամ քաղեց վարդը կենսաբոյր,
Քաղցր շրթունքիդ խլեց վառ ժպիտ,
Ճակատիդ դըրեց թախիծը տխուր։

Այդ վանդակի մէջ դու ոսկէզօծած,
Սոխակի նըման մոռացած երգեր,
Հալուում, մաշուում ես, թևերըդ խուզած,
Զունիս, սիրելի՛, սրտացաւ ընկեր։

Յուսա՛ դու, խեղճո՛ւկ, յուսա՛. թող լինի
Վշտի հրեշտակը քեզ հովանաւոր.
Ո՞վ գիտէ, գուցէ պայծառ վիճակի
Օրը դեռ ծագի և քեզ փառաւոր . . .

———※———



* * *

Ահա քեզ ձեռըս, ընկե՛ր թանգագին,
Սեղմի՛ր դու նորան անվախ, անկասկած—
Բարեկամ է նա լքեալ թշուառին,
Փորձութեան բովում կոշտերով ծածկուած։

Թող ծանր վշտիցն անցած օրերի
Հանգչի քո սիրտը գոնէ մի վայրկեան—
Առ՛ իմ գիրկը, ընկե՛ր սիրելի,
Ես իմ ջերմ կուրծքին օրօրեմ նորան.

Եւ ցաւակցութեան այրող արցունքով
Տանջանքիդ այդ կուռ շղթան կործանեմ,
Գուցէ և սիրոյ դիւթական շողով
Մի րոպէ ես քեզ հանգիստ պարգևեմ . . .



* * *

Ես քեզ սիրեցի, բայց չեմ կամենում
Տալ սիրտըս, հոգեա՛կ, քեզ ընհաւ գերել—
Մի անկիւն նորա անմեկին խորքում
Ա՛յլ սիրոյ համար ես կամիմ պահել։

Ջերմոցում աճած դու վարդ նազելի,
Արցունքի մի շիթ չէ կաթել թշիդ,
Կեանքի փոթորիկն անվերջ, ահռելի՛,
Դեռ քո շրթունքիդ չէ խլել ժպիտ։

Եւ անհոգ խաղով, ինչպէս թիթեռնակ,
Ծրագի բոցին դու մօտ ես վազում,
Եւ չես հասկանում թէ համաճարակ
Հրդեհն է այդպէս քեզ հրապուրում . . .

Տե՛ս՝ թշուառութեան հազարալեզու
Բոցը բորբոքուած խնդրում է զոհեր,
Տե՛ս՝ այստեղ խռնած իրար մօտ ահու
Վերջին են սպասում քանի՜ անբաղդներ . . .



Եւ դոցա համար ես սէր եմ պահում,
Այդ ճակատագրի խորթ որդոց համար,
Որոնց առաջին դուռը չէ բանում
Մխիթարութեան՝ քարասիրտ աշխարհ . . .

Տո՛ւր ինձ, սիրելի՛ս, և քո՛ սէրն անբիծ
Այս հառաչանքի հովիտը տանեմ—
Գուցէ արցունքը ցաւած աչերից,
Մաշուած ճակատից թախիծը խլեմ։



* * *

Ի զուր է, հոգիս, ի զուր, իմ հրեշտակ,
Այդ գգուանքներըդ, անուշ ժպիտներ.
Դու չես վառելու սրտիս մէջ կրակ,
Նորից կեանք չեն տալ ինձ քո համբոյրներ։

Ինչպէս որ աշնան արեւը աղօտ
Չէր սթափեցնելու մեռնող տերեւներ,
Ինչպէս արհեստը ծաղկանցը անհոտ
Կորուսած բոյրը էլ յետ տալու չէր,

Նոյնպէս քո սէրը նորից բորբոքուած՝
Իմ մարած հոգուն յարութիւն չի տայ.
Քեզ համար, հոգեակ, իմ սիրտը մաշուած
Այլ եւս չունի նոյն սէրն, հաւատ։

Բայց երբեւ ցնորք քեզ միշտ պիտ սիրեմ,
Մի քաղցր ցնորք ոսկի մանկութեան,
Իբրեւ կորուսած վաղանցիկ եդեմ,
Մի վառ շող անկեղծ ողեւորութեան,



* * *

Այս օրերումը ընդհանուր սուգի,
Զարդուած սրտերի, դառն հառաչանաց,
Երբ մենք միշտ պատրաստ մի ծանր կռուի,
Վատնում ենք ոյժեր դեռ չըկազմուրուած,

Եւ այս կռուի մէջ անեղ, սոսկալի,
Ուր որ զըկուածը նենգաւոր բաղդից
Անհետանում է, որպէս մի ճըճի,
Յաղթուած ոսկէզօծ երկաթի բազկից,

Ուր միայն մէկկի ծառն երջանկութեան
Բուսնում է տասի աւերակներից,
Ուր մի ժպիտը ծաղկում է միայն
Հարիւրաւորի աղի արցունքից,—

Ես դեռ անվըհատ շարունակում եմ
Իմ ճանապարհը, դեռ հաւատալով
Թէ գուցէ մի օր և ես գտնում եմ
Այն, ինչ չը կամի բաղդը տալ սիրով։

Բայց եթէ և ես տանջուած, չարչարուած,
Գըլուխ խոնարհեմ իմ ճակատագրին,
Խորտակուած յուսով, արիւնս սառած,
Իբր աշնան տերև քամու առաջին,

Ընկեր սիրելի՛, դու չըմոռանաս
Յիշել անունը մատաղհաս երգչի,
Որ գիտէր տանջուիլ, սիրել հանապազ,
Գուցէ երջանիկ օրուան արժանի։





## Ե Ր Գ

Աննման ես, ինչպէս հրեշտակ երկնային,
Չեմ կշտանում նայելով քո երեսին.
Վառ աչերըդ, ինչպէս արև գարնային,
Ա՜խ, սիրակա՛ն, բորբոքում են իմ հոգին։

Իրաւունք տուր՝ ծծեմ մեղրը շըրթունքիդ,
Քաղեմ կարմիր այդ վարդերը թշերիդ.
Ով որ առնի հոտը շամամ ծծերիդ,
Էլ կարօղ է թէ մի գին տայ իւր կեանքին։

Թէ Աստուած ինձ պիտի մահ տայ, թող մօտ
գամ,
Վզովդ ընկնեմ, քեզ համբուրեմ մի անգամ.
Թող ապրշում մազերովդ ինձ կախ տամ—
Բընաւ մի կեանք էլ չի հասնի այդ մահին։



* * *

Ինձ մի՛ սիրիր. անբաղդ օրիս
Այդ սէրն ինձ չէ խնդութիւն.
Դաժան վշտից խեղդուած հոգիս
Էլ չի առնի յարութիւն։

Ծածուկ կիրքը ինձ պիտ տանջէ,
Ես չըկամիմ քեզ սիրել,
Բայց իմ սիրտը միշտ պիտ խնդրէ
Քնքուշ սրտիդ մօտ լինել . . .

Եւ պատրաստ եմ քեզ յաւիտեան
Լինել անկեղծ կարեկից,
Եւ թող բեռը քո տխրութեան
Զըհեռանայ իմ սրտից։

Ինձ մի՛ սիրիր . . . թող ախտաւոր,
Մաշող սիրոյ փոխարէն
Մտերմութիւն մեզ բաղդաւոր
Կապէ կապով բոցեղէն։





* * *

Ես քեզ սիրում եմ, սուրբ գեղեցկութեան
Անարատ հրեշտակ, տիպար մաքրութեան.
Սիրում եմ ոչ վառ աչերիդ համար,
Ուր ցոլանում է քո հոգին պայծառ,
Ոչ վարդ այտերիդ, նազուք շրթունքիդ,
Ուր ծաղկում է քաղցր երկնային ժպիտ . . .

Այդ անմեղութիւնն, այդ ամբիծ հոգին,
Օտար աշխարհի տգեղ ախտերին,
Այդ սիրող սիրտը, ջերմ սիրան անխարդախ,
Այդ վառ հաւատը մանկութեան խաղաղ—
Ահա թէ ինչը, մանուկ պաշտելի,
Ես անկեղծ սրտով քեզնում սիրեցի։

Եւ սեղան կանգնած երկրպագութեան,
Հալուէ ու զմուռս, կնդրուկ սրբազան
Քեզ պիտի ձօնեմ, թէ սէրն իմ սրտի
Քեզ պէս դիցուհուն չէ զոհ արժանի։



* * *

Ամենայն անգամ, երբ տեսնում եմ քեզ,
Խելօք աչերիդ նայում եմ զմայլած,
Եւ յանկարծ անփորձ մի մանուկի պէս
Ես կարմրում եմ յուզուած, շփոթուած . . .
Ամենայն անգամ որքան էլ տրտում
Ինձ տուած լինիմ մաշող մտքերի,
Քո ներկայութիւնն աղբիւր է լինում
Ինձ համար ուրախ, զըւարթ ժամերի։

Այս ի՞նչ է արդեօք, ո՛վ կոյս նազելի.
Մի՞թէ սէր արդէն. ո՛հ, եթէ այդպէս—
Թող ուրեմն, հոգեա՛կ, նուէրն երկնքի,
Այս աստուածեղէն կայծն հասնի և քեզ.
Կ'ուզէի և քո արիւնը վառուած
Սիրոյ փոթորիկ հանէր քո սրտում,
Կ'ուզէի տեսնել քո հոգին խռոված,
Արցունքի շիթեր և քո աչերում . . .





* * *

Անլոյս խաւարը, չարութեան ոգին
Տիրել էր աշխարհ, և վաղուց մարդիկ
Ապառաժ սրտով կործանել էին
Խանդավառ զգացման պատկեր գեղեցիկ.
Անցած օրերի մաքուր պարզութիւն
Ապականութեան ասպարէզ դարձած,
Էլ չէր կարմրում նենգամտութիւն,
Առաքինութեան փառքըն էր շիջած . . .

Բայց հասաւ օրը մի նորոգ կեանքի,
Եւ Բեթղեհեմից նոր արև ծագեց,
Այրից առաջին ճիչը Մանուկի
Փրկութեան ժամը մարդկանց աւետեց.
Նորա ժպիտն էր, որ անհուն սիրով
Սրտերի սառուցն պիտ հալեցընէր,
Եւ մարդկութիւնը նորա շրթունքով
Ճշմարտութիւնը պիտի ուսանէր։



## ԳԱՄԱՌ-ՔԱԹԻՊԱՅԻՆ

Նա որ հըզօր, դիւթիչ գրչով
Հայի հոգին բաց արեց
Եւ սրտառուչ ազատ երգով
Մեզ խինդ և լաց պատրաստեց,

Թող և այսօր հնչեցընէ
Իւր մեղեդին համարձակ,
Արի ձայնով թնդացընէ
Հայ աշխարհը բովանդակ:

Եւ կենդանի այն վառ քարոզ
Անշահ սիրոյ, սուրբ գործի,
Ինչպէս վտակ առատահոս,
Թող ամէն տեղ տարածուի:

Թող խօսքն յստակ և անկաշառ
Ոյժ տայ թոյլին հանապազ,
Քաջին բաշխէ հաւատ պայծառ,
Եռանդ ու խանդ աննուազ:

———※:※———



## Հ Ա Տ Ի Կ

Լոյսը բացուում է. շուտ արտը գընամ,
Պատռեմ սուր խոփով ես կուրծքը հողի.
Իմ սիրուն հատիկ, քեզ նորան պահ տամ
Մինչև օրերը ամրան արևի:

Թաղեմ քեզ, հատիկ, և դարդըս քեզ հետ.
Թէ Աստուած ուզեց, դու կանաչեցիր,
Թող դարդըս մեռնի գետնի տակ անհետ,
Դու ինձ մխիթար կրկին տուն դարձիր:

Եւ ջերմ աղօթքով Տիրամօր առջև
Ես մոմ կը վառեմ, ես խունկ կը ծըխեմ,
Որ քեզ պարգևէ մի առատ անձրև,
Որ քեզ միշտ սիրով նայէ խնդադէմ:

Բայց թէ այդ շնորհին մեղքերիս համար
Արժանի չլինիմ, ծով կը դարձնեմ
Ես տաք քրտինքը ճակտիս արևառ,
Որ քեզ, իմ հատիկ, ծարաւ չթողնեմ:

Ծլլէր, կանաչէր, ոսկէ սաւանով
Ծածկէր իմ արտը ողջ ալէծածան,
Նոր այն ժամանակ անուշ շրշիւնով
Տուր ջարդուած սրտիս մի քուն հանգստեան։





## ԶԱՏԻԿ

Դարձեալ գարուն, և խնդագին
Արթնանում է բնութիւն,
Պարգևում է արևն երկրին
Իւր շնորհատու զօրութիւն։

Եւ սթափում է մի նոր կեանքով
Կանաչ տերև, թաւիշ խոտ,
Եւ բերում է ողջոյն սիրով
Ձեզ զեփիւռը քաղցրահոտ։

Եւ կենսաբոյր այս վառ գարնան
Գեղեցկութիւնն ոգելից
Կամի յուսալ մի պատասխան,
Ներդաշնակ խօսք աշխարհից։

Բայց խռովայոյզ միտքը մարդկան
Ըսպասում է այն օրին,
Երբ սէրը մեծ ու անվախճան
Պիտի յառնէ վերստին։

Եղբայրական սուրբ համբուրով
Մարդիկ միմեանց մօտեցած
Ողջագուրել անոխ հոգով
Պիտի շատպէն սէր գրկած։

Կը գայ այդ օրն, էլի նորէն
Մարդիկ մեծ սէրն անվախճան
Ամբողջ տարով պիտի թաղեն
Մինչև նոր օրն յարութեան...





## ԵՐԿՈՒ ՀԱՄԲՈՅՐ

Քանի դեռ մատաղ արիւնը եռուն
Երակներիս մէջ զարկում է ուժգին,
Եւ ծաղիկներով կեանքը զարդարուն
Խոստանում է մեզ մի դրախտ երկնային,—
Սէր չքնա՛ղ, դու ես համբոյրըդ տալի
Մեր ախտաբորբոք այրուող շըրթունքին,
Բաղդի խաբուսիկ համբոյր թունալի,
Ինչպէս ոսկեզօծ երազ հիւանդին։

Բայց կը գայ ժամը, երբ հրաժարական
Պիտի տանք ողջոյն բոլոր պատրանաց,
Եւ անուշաբոյր կեանքի քաղցրութեան,
Եւ անագորոյն դառն հառաչանաց,—
Եւ ահա՛ գունատ մահը կը դրոշմէ
Իւր սառն համբոյրը մեր սառ շրթունքին,
Եւ գիտեմ որ նա պիտի չըխաբէ
Մեզ փաղաքշելով իւր անկեանք կուրծքին։



* * *

Երբ ես նստած եմ տխուր և մինչիկ
Պատանիների անհոգ շրջանում,
Որ քեզ շուրջ պատած, իմ ընկեր քաղցրիկ,
Հաճոյանալ են այնպէս ցանկանում,
Ո՛հ, դու մի՛ կարծիր, թէ այն մեծամիտ
Հպարտութիւնն է, շրթունքըս կապում
Եւ ուրախութեան բաղձալոր ժպիտ
Ամպամած դէմքիցս հեռու է պահում։

Ես լուռ եմ լինում. բայց թէ քո աչեր
Հոգուս խորքերը թափ անցանէին,
Դու կը տեսնէիր, թէ ինչ զգացմունքներ
Այնտեղ բորբոքուած, կուտակուած էին։
Ես չեմ կամենում ի զուր վրդովել
Իմ վառ, երջանիկ հոգեզմայլութիւն,
Ես կամիմ լռիկ սրտումըս պահել
Սիրուն պատկերիդ անվերջ քաղցրութիւն։



Ահա համնում է և խորին գիշեր.
Դու ճաշակում ես հանգիստ անխռով,
Իսկ ես քուն չունիմ և երկար ժամեր
Անցնում եմ խաղաղ, բայց անուշ ցնորքով.
Պատկերդ առաջիցս էլ չէ հեռանում,—
Խորին գիշերով աղօթքի համար,
Քունս մոռացած, ես վեր եմ կենում,
Օրհնում եմ, հոգեակ, օրերըդ պայծառ։



* * *

Եւ այս գարուն կ՚անցնի շուտով,
Կը թառամի մանուշակ,
Կը ծածկուի սև՛ վարագուրով
Երկնից դէմքը անուշակ։

Միայն սէրը միշտ կը մնայ
Իմ սրտումը կենդանի.
Ոչինչ սիրող սրտի վերայ
Բռնանալու ույժ չունի։





* * *

Երբ ես տեսնում եմ, որ ունայնասէր
Աշխարհը այսօր պսակում է փառքով
Նորան, որին ինքն յետոյ պիտ ծաղրէր
Նախանձով վառուած մի աղքատ հոգով,—
Ես կամենում եմ այն կեղծ երեսին
Տալ ճշմարտութեան սուրբ խօսքն անկաշառ,
Իբր ահեղ փողի որոտ՝ ականջին
Հասցնել մի մեծ, սոսկալի բարբառ,—
Հող էիր, ո՛վ մարդ, հող դառնաս դարձեալ։
Եւ եթէ մի է բոլորիս վախճան՝
Անվերջ երազով ապրիլ և յուսալ
Միայն մի թիզ հող վերջին հանգստեան,
Ի՞նչն է մեզ ստիպում անմիտ պարծանքով
Ցուցամոլութեան, մանկան արժանի,
Փառքի պսակը հիւսել մեր ձեռքով,
Որ մեր ոտներին կոխան պիտ լինի։
Մենք կը տապալենք այն վեհ բարձրութիւն,
Որ մենք ենք կանգնում իբրև աշտարակ,
Եւ խրոխտ շէնքի հոյակապութիւն
Կը մնայ մեզ իբրև տխուր աւերակ . . .



* *

Ինչպէս վտակ ես կը թափեմ
Աչքերիցըս արտասունք
Եւ նոցանից կը բուսցընեմ
Ես քեզ համար վառ ծաղկունք։

Եւ հնազանդ իմ վիճակին
Ես կը տանջուիմ հանապազ,
Լինի միայն, ընկեր անգին,
Երջանկութիւնդ անպակաս։

Գիտեմ, որ ինձ չես մոռանայ,
Երբ ես իջնեմ գերեզման,
Եւ կը յիշես, որ ես մեռայ
Քեզ մտերիմ, սիրակա՛ն։





* *

Երբ մատաղ մուսաս ժպիտն երեսին
Առաջին անգամ ինձ երեւցաւ,
Նա գեղեցկութեան, սիրոյ պատկերին
Երկրպագելու ինձ պատուէր տուաւ։

Ես ուսայ երգել, և երգում էի
Անվարժ տողերով հրաշքները գարնան,
Նազելի վիշտը կուսական սրտի,
Անուշ վայելքներ սիրոյ արբեցման։

Անցան տարիներ, և ներքին մի ձայն
Մի նոր հուր վառեց իմ յուզուած հոգում,
Երբ վերաս ինչպէս կապար ծանրացան
Կեանքի պիտոյքը, մարդկան չարութիւն։

Սիրոյ զուարճութեան մեղեդիների
Ժամանակը չէ, ո՛վ անհոգ երգիչ.
Դուրս եկ ասպարէզ մահառիթ կռուի,
Թունով թաթախուած ա՛ռ կարող գրիչ։

Անխնայ դատէր եղեռնագործին,
Մեծատան երեսն այրէր ամօթով,
Մեր բոլոր ախտեր ցոյց տուր աշխարհին
Խայտառակութեան անարգ պսակով։

Թող որ չարութիւն սարսափի տեսած
Արժանի պտուղն ըստոր գործերի,
Եւ կեղծաւորը ուժաթափ եղած
Թող իւր ոսկեզօծ դիմակը հանի . . .





* * *

Երբ նա դեռ նոր էր լոյս աշխարհ տեսել,—
Դառն աշխատութեան, կարիքի զաւակ—
Աւանդ ստացաւ սիրել և գործել,
Ճակատին ծանըր խաչի նշանակ։

Եւ նա մեծացաւ, և կեանքը մտաւ,
Եւ հաւատարիմ մնաց իւր խաչին.
Յանդուգն լուղորդ՝ ալեաց մէջ ընկաւ,
Մրցում էր, դիմում փրկութեան ափին։

Աներկբայ մտքով, հաւատող հոգով
Քարոզում էր իւր խաչի քաղցրութիւն,
Ինչպէս խարազան երկաթի խօսքով
Նա հալածում էր շահ ու բռնութիւն։

Բայց ի՞նչ. չարանենգ քուրմերը ուժի
Մահաթոյն լեղի արբուցին նորան,
Կարմիր երկաթով նշանը խաչի
Ջնջեցին պայծառ ճակատի վըրան . . .

Եւ հաւատարիմ իւր կոչման մեռաւ՝
Սուրբ ճշմարտութեան անբիծ նահատակ,
Իսկ սիրոյ նշանն անմահ դրոշմուեցաւ
Շատերի սրտում մէկի փոխանակ . . .





* * *

«Սովորեցէք բարութիւն անել, որոնեցէք իրաւունք, ուղղութիւն ցուցէք զրկուածին, որբի դատը տեսէք, որբևայրու դատը պաշտպանեցէք»:

Մարգար. Եսայեայ, Ա. 17.

Մի՛ թողնիր, երգի՛չ, քնարըդ կախած,
Որ նորան ժանգով տարիքը պատեն,
Ոսկի լարերին դու ոգևորուած
Զարկի՛ր մատներով, թող դարձեալ հնչեն։

Թող հնչեն նորից հին երգը անմահ
Եւ վառեն սիրով սրտերը մարդկան,
Թող նոքա նորից օրհներգեն անահ
Գործերը բարւոյ և կարեկցութեան։

Ինչպէս չէ կարող ձմեռն արգելել
Գալուստը շքեղ ծաղկաբոյր գարնան,
Նոյնպէս ճշմարիտ խօսքը խափանել
Չէ կարող ձայնը անմիտ չարութեան։

* * *

Սիրուն գլուխըդ կուրծքիս խոնարհած
Դու լալիս էիր և ինձ մրմնջում.
«Անգո՛ւթ, հերիք չէ՞, ես այսպէս տանջուած—
Անսահման սէրս դու չես նկատում»։
Եւ լալիս էիր այնպէս կաթոգին,
Գոհար շիթերը քո արտասուքի
Ինչպէս հուր՝ ջարդուած սիրտըս այրեցին,
Թէպէտ երազ էր այս, իմ նազելի։

Իսկ ես անդադար, վշտերըս խեղդուած,
Ողբում եմ սէրս—դու չես նկատում.
Իմ տխուր երգը քո անուամբ հիւսուած
Ցրտացած սիրտըդ բընաւ չէ շարժում։
Ա՜խ, ի՜նչ երջանիկ ես կը լինէի,
Եթէ երազում թափած արցունքիդ
Գոնէ երկու շիթ իրաւ տեսնէի,
Իմ վշտի հրեշտակ, այդ վառ աչերիդ...



## ԵՐԳԶԻՆ

Թող երգդ հնչէ ներդաշնակ
Ազատ սրտի վառ զեղմունք,
Թող զարթեցնէ համարձակ
Մեր քնէած ըզգացմունք։

Վառի՛ր դու մեր սրտերում
Հուրը ազնիւ կրքերի—
Երկրպագու ենք կանգնում
Ճշմարտութեան պատկերի։



* *
*

Ամենայն անգամ, երբ թեթևամիտ
Դիպչում է մուսաս սրտիս լարերին,
Քնքուշ մատներով խըլում է ժըպիտ
Եւ գընում թախիծն իմ անհոգ ճակտին,—
Անցած պատկերներ խուռն երամով
Լցւում են սիրտըս, զարթնում է հոգիս,
Եւ միտքըս հեռու թռչում է սիրով
Նազելի աշխարհն մանուկ օրերիս։

Եւ կամենում եմ սէր երգել միայն
Եւ քաղցրութիւնը մաքուր հասակի,
Անուշ ժամերը անամպ խնդութեան,
Կենդանի հրճուանք կուսական սրտի։
Բայց միշտ ակամայ լարերը բեկբեկ
Տխուր են հնչում օրհներգը սիրոյ,
Էլ չէ երևում ինձ սէրը երբէք
Իբրև վառ զեղմունք երջանիկ հոգւոյ։



Եւ միշտ լսւում է մի ձայն լարերից,
Որպէս հառաչանք պաղատող սրտի,
Էլ չէ հեռանում նա իմ ականջից,
Այդ ձայնն անմեկին մի խորին վշտի․
«Այնտեղ, ուր արցունք, շղթայ և աւեր,
Ուր լսւում է լոկ հառաչք լալագին,
Քո քընարիցը թող ուրախ ձայներ,
Ո՛վ թշուառ երգիչ, բընաւ չըլսուին»...



* * *

Թող այսօր մութն է քեզ համար արև,
Զարտասանջ հոգիս, թող անվերջ ցավով
Բաղդն իբրև խորթ մայր բերէ քո առջև
Կեանքի բաժակը, լի դառըն թունով,—

Կը գայ և մի օր քո վառ արշալոյս,
Դու կը մոռանաս անցեալի ցաւեր,
Խաղաղ վիճակի կը ցոլայ քաղցր յոյս,
Ոգևորութեան կ'հոսեն արցունքներ․․․





* * *

Դու չըկամիս, ով կոյս, լինել
Իմ տանջանքին մասնակից,
Դու չըկամիս հըրաժարուել
Այդ քո անհոգ վիճակից։

Բայց թէ սիրտըս դու տեսնէիր,
Ճանաչէիր իմ հոգին,
Ինչ է վիշտը—կ'իմանայիր,
Կը սիրէիր դու երգչին։

Շատ գոհարներ վառ, աննըման,
Ալիքներումն են թաղուած,
Շատ զգացմունք, սէր անսահման
Սրտիս խորքումն են պահուած։



*
* *

Ասում են. «Պոյէտ, մենք չենք կամենում
Արտասուք տեսնել, լսել հառաչանք.
Ի՞նչ ես քո այրող վիշտը մեզ պատմում,
Ի՞նչ ես դու ողբում քո անվերջ տանջանք.
Մենք միայն վայելք ուզում ենք կեանքից,
Հրճուանք, խնդութիւն և ուրախ տաղեր.
Մեզ անհոգ ժամեր երգիր ոգելից,
Կեանքի խնջոյքը, գինով բաժակներ» . . .

Եւ դու լսում ես անմիտ ցնծութեան
Ճիչեր՝ արձակած անդուռն բերանից,
Եւ չես սպասում մի ազնիւ զգացման,
Մի յստակ սիրոյ նշոյլ դոցանից . . .
Տեսնում ես շուրջըդ կարիք և զրկանք
Եւ ըստրկութեան ճնշող շղթաներ.
Եղբարքըդ, կեանքից չտեսած գգուանք,
Վաղ ճաշակել են հոգեմաշ ցաւեր։



Չես կարողանում քնքուշ մատներով,
Ոգևորութեան երջանիկ ժամում,
Դիպչել լարերին, թէ հլու քնարով
Երգելու լինիս մի անհոգ խնդում։
Եւ կատաղում ես, որ քո զգացմունքին,
Վեհ հոգուդ չկայ մի խօսք համակիր,
Յուսահատուում ես, որ քո քարոզին
Մարգարէական՝ չունիս ունկնդիր։

Բայց հանգիստ մնա, կը գայ ժամանակ—
Կ՚անցնէ խաւարը մոլեռանդութեան,
Կը գայ նոր սերունդ, զգալու ընդունակ,
Լուսածին որդիք սուրբ ազատութեան.
Եւ արքայական քո բաց ճակատին
Հպարտ սարդենին կը փայլի փառքով,
Եւ քո թունալից թուող տողերին
Մարգարիտ կ՚շարեն սիրոյ արցունքով . . .



* * *

Քեզ մօտեցայ սէր յուսալով,
Պայծառ դէմքիդ նայեցի,
Ես—խաւարած վշտի ամպով,
Դու—արշալոյս նազելի։

Ես ասացի. «Ինձ քոյր եղիր,
Եղի՛ր ընկեր ցաւակից,
Սէրըս, երգըս դու ընդունի՛ր
Նուէր տանջուած մի սրտից»։

Բայց դու, զաւակ փարթամութեան,
Չը հասկացար երգս աղքատ.
Դու—նոյն անհոգ թռչնակ գարնան,
Ես նոյն երգիչն յուսահատ . . .





* * *

Մընա՛ք բարով, արև, գարուն
Եւ խնկաբոյր ծաղիկներ,
Կարկաչահոս վտակ սիրուն,
Կանաչազգեստ բլուրներ.

Մընա՛ք բարով, համբոյր և սէր,
Դէմքով հրեշտակ կոյս չքնաղ,
Վայելչութեան պայծառ ժամեր,
Քաղցըր ժպիտ, կեանք մատաղ . . .

Աղքատութիւն ես սիրեցի,
Խեղճի լացը, հառաչանք,
Ես քընարըս նուիրեցի
Վիշտ երգելու և տանջանք։



* * *

Դու ծաղկում ես, ինչպէս վարդը հարաւի,
Քեզ փարում է առաւօտեան շողն ոսկի,
Եւ ցօղում է ծաղկանց բոյրը քո կուրծքին
Զեփիւռն անուշ՝ գուրգուրալով հեշտագին.
Եւ աստղերը շողշողալով ճակատիդ
Քեզ ժպտում են գիշերները խնդամիտ.
Թեթեւաքայլ եղնիկի պէս նազ տալով,
Հալեցնում ես մատաղ սրտեր աչերով:
Բայց չգիտես դու քո ոյժը, սիրելի,
Միամիտ ես, անփոյթ, իբրեւ աղաւնի.
Այրող, մաշող սիրոյ բուռըն փոթորիկ
Դեռ չէ յուզել մանուկ կուրծքըդ գեղեցիկ…

Եւ իմ միակ ցանկութիւնն է, որ անբիծ
Սիրտըդ զգար սիրոյ հրճուանք ու թախիծ,
Եւ գուրգուրանքըն հասկանայիր զեփիւռի,
Եւ սիրտըդ թունդ զարկել տար բոյրը վարդի,
Եւ ըզգայիր, որ բացի խաղն, անհոգ կեանք,
Կայ ակամայ արցունք, եւ վիշտ, եւ տանջանք:

———※———



## ԱՐՏԱՒԱԶԴ

Զարկեցէք, դարբիններ, կռանը սալին,
Զարկեցէք կռանը—շղթայքն ամրանան,
Անիծեալ արքայի կապանքըն ամրանան.
Զարկեցէք, դարբիններ, կռանը սալին:

Անհարկու ամպերը եկան ժողուեցան,
Ծեր Մասեաց ճակատին սեւ քող փաթթեցին,
Գոռում է փոթորիկ գազանի նըման,
Հառաչում, սուլում է կատաղած քամին:

Զարկեցէք կռանը. խորունկ քարայրից
Ահա չար հողմի հետ հասնում են ձայներ…
Ցոլացաւ փայլակը—արքայի աչքից
Դէպի վեր թռչում են բարկութեան կայծեր:

Կամի նա ելանել վրէժխնդիր հոգով
Իւր անվերջ տանջանքի թոյնը մահաբեր
Աշխարհի չորս կողմը շաղ տալու մտքով,
Բայց ամուր են նորա ծանըր շղթաներ:

Մտերիմ գամփռերը կրծում են կապանք,
Կրծում են անդադար կապանքն արքայի...
Արտաւազդ, վերջ չունի հոգուդ տառապանք,
Եւ դեռ շատ հեռու է, վախճանն աշխարհի։

Եւ անզօր չարութեան քո կուռ հարուածներ
Դեռ պիտի փշրուին մեր մուրճի տակին—
Մենք սպասում ենք դեռ և գեղեցիկ օրեր,
Դեռ հաշտ է երկինքը մեղսոտ աշխարհին։

Բայց եթէ քարացած՝ մենք չենք լսելու
Նոր կեանքի կոչն հուժկու, և վերածնութեան
Սրբարար աւազան մեզ չէ փրկելու,—
Արտաւազդ, փշրուի թող մեր կուռ կռան.

Մենք էլ չենք զարկելու երկաթի սալին,
Թող կրծեն գամփռերըդ ոտքիդ շղթաներ,
Արձակուին բազուկներդ, և դու աշխարհին
Դուրս արէ բերելու կոտորած, աւեր...

Բայց ո՛չ. հաւատում ենք դեռ մենք փրկու-
թեան,
Մեզ մի նոր երկնքից նոր լոյս կը բացուի,
Եւ տեսնում ենք ահա արդէն ծիածան
Մենք ազա՛տ, լուսաւո՛ր մի նոր վիճակի...



Զարկեցէ՛ք, դարբիններ, կռանը սալին,
Զարկեցէ՛ք կռանը—շղթայքն ամրանան,
Անիծեալ արքայի կապանքն ամրանան.
Զարկեցէ՛ք, դարբիններ, կռանը սալին։



## Ս. ՇԱՀԱԶԻԶԻՆ

### I.

Արդեօք երազ էր ոսկի մանկութեան,
Արդեօք ցնորք էր յուզուած ուղեղի,—
Հայի վեհ հոգին ես տեսայ կենդան,
Հայ միտքը ծաղկած գերթ կոկոն վարդի.
Ինչպէս կարկաչուն մի առուակ կայտառ,
Ինչպէս զանգակի արծաթի հնչիւն,
Լսեցի անուշ մայրենի բարբառ,
Տեսայ վառ գեղմունք, ոգեւորութիւն։

Եւ նորից հոգումս յարութիւն առաւ
Նոր, կրկին գեղով երգը պոյետի,
Եւ շարժուած սրտիս լարերին հասաւ
Թաթաղուն նուագն անզոյգ քնարի։
Եւ ես մկրտուած նոր մարդ նոր հոգով,
Մանուկ հրճուանքով գոչեցի ազատ.
«Կեցցես, ով քերթող, քո թովիչ երգով,
Կեցցես յաւիտեան, լեզու հարազատ»։





### II.

Սեւաքօղ գիշեր, իբրեւ փոթորիկ,
Կախուած էր հայի չարչարուած գլխին.
Հեծում էր սարուկ, թշուառ հայրենիք,
Գլուխ խոնարհած խայտառակ լծին։

Հազար ցաւերով սիրտը պատառուած՝
Կարօտ էր լսել գէթ խօսք կարեկից,
Իսկ անմիտները, իրանք խաւարած,
Թանձրացնում էին մութ քօղը երկնից։

Բայց հայ աշխարհը դեռ եւ զուրկ չէր
Ազնիւ սրտերից. գիտութեան ջրահով
Ջինավառուեցան լուսոյ ջաւակներ,
Պատռեցին խաւարն ամուր ձեռներով։

Մերկացաւ դիմակ փարիսեցութիւն,
Եւ փքուն խօսքերն օդում ցնդեցան,
Երբ մատաղ քնարի լսուեցաւ հնչիւն—
Կենդանի քարոզ վերածնութեան։

Եւ դու դեռ մանուկ, եռանդով վառուած,
Տուիր լարերին ոգևորութիւն.
Դու վիշտ երգեցիր, վիշտը հայրենեաց,
Հոգով ողբացիր ազգիդ գերութիւն։

Սէր, եղբայրութիւն, գիտութիւն ու լոյս
Դու քարոզեցիր խաւար սրտերին
Եւ վառ հաւատով կարդացիր խրախոյս
Ծանըր, ահարկու կռւում ընկճուողին։

Դու ներշնչեցիր մեզ մի յոյս գողտրիկ,
Թէ մեր փրկութեան օրն էլ շուտ կը գայ.
Անկեղծ սիրեցիր դու քո հայրենիք,
Նա, ազնիւ երգիչ, քեզ չի մոռանայ։





* * *

Հրաշալի՜ գիշեր... խաղաղ քուն մտած
Հանգչում է բնութիւն քնքուշ երազով.
Պայծառ երկնքում լուսինը վառուած
Նայում է երկրին սիրահար աչքով։

Այսպիսի գիշեր այրուած սոխակին
Իւր բոյրն անուշիկ վարդն է պարգևում,
Այսպիսի գիշեր մատաղհաս երգչին
Առաջին սիրոյ շունչն է խռովում...

Եւ սիրտս մանուկ մի այսպէս գիշեր
Ես զոհ բերեցի նենգաւոր կուսին.
Էլ այնուհետև, անցան տարիներ,
Հանգիստ չտեսաւ իմ տանջուած հոգին։

Եւ հիմա մուսաս այսպիսի գիշեր
Երևում է ինձ փուշ պսակ գլխին,
Եւ երգում եմ ես քո կուռ շղթաներ,
Ստրո՜ւկ հայրենիք, իմ մայր տխրագին...

* * *

Սիրելի ես, ինչպէս գարուն,
Պայծառ, ինչպէս արշալոյս.
Կը նախանձէր ժպտիդ սիրուն
Կարմիր վարդը ծաղկելուս։

Դու սէր և լոյս բերում ես միշտ,
Ուր էլ լինիս, նազելի՛ . . .
Աստուած քեզ հետ. երբեք մի վիշտ
Թող քեզ ծանօթ չլինի։





* * *

Դու երևեցար, ինչպէս վառ գարնան
Լուսաշող այգի նշոյլ ոսկէթոյր.
Դու երևեցար—ժպիտդ աննման
Քաղցր էր զերթ սիրոյ առաջին համբոյր։

Ծաղկոցում բացուող քեզ վարդ կարծեցի,
Դրախտի վայելք տեսայ քո աչքում...
Ա՜խ, այդ աչերիդ ես զոհ բերեցի
Եւ անհոգ վիճակ և սրտիս խնդում։

Եւ եթէ դու էլ խաբում ես, ո՛վ կոյս,
Սէր չէ խոստանում հայեացքդ չքնաղ,
Թէ այս անգամ էլ ունայն է իմ յոյս,—
Դարձեալ պիտ օրհնեմ հասակդ մատաղ.

Պիտ օրհնեմ ես այն, թէպէտ կարճատև,
Բայց վեհ, հոգեզմայլ հրճուանքի համար,
Որ հոգուս բերիր դու, ինչպէս արև,
Ինչպէս խնկաբոյր մայիս կենարար։



*
* *

Պառկած էր նա ցուրտ մահճում
Եւ լսում էր, թէ ինչպէս
Դուրսը հողմն է հառաչում
Եւ մերթ լալիս մանկան պէս։

Դուրսը մութն էր. կէս գիշեր...
Եւ նա հիւանդ, ցուրտ մահճում,
Երազում էր ջերմ շողեր
Եւ անձկութեամբ հառաչում...





*
* *

Թէպէտ խեղդուած եմ ես դաժան վշտից
Եւ սիրտս մաշուած անմիտ յոյսերով,
Թէպէտ մինչ այսօր խաբուած եմ կեանքից,
Կարօտ անանելու մի անկեղծ գորով.
Թէպէտ դառնութեամբ հոգիս է լցուած
Եւ գանգատուում եմ չար բաղդիս վերայ,
Որ այս աշխարհում ես միշտ հալածուած՝
Եւ ոչ մի սփոփանք ինձ համար չկայ,—

Բայց դու մի՛ յիշիր իմ դառն վիճակ,
Խաբի՛ր ինձ դարձեալ շքեղ ցնորքով,
Թէ դեռ ինձ համար գարնան արեգակ
Կը ցոլայ պայծառ, գոհար պսակով,
Թէ արծաթափայլ ամօթխած լուսին
Գողարիկ հայեացքով դեռ ինձ կը ժպտի,
Թէ ծով-ծով աչերն աննման կուսին
Սիրտս անուշ անձով դեռ յուզեն պիտի...



* * *

Ահա քնար և տաւիղներ.
Յառա՜ջ, եղբարք, երգերով.
Թող բարձր հնչեն մեղեդիներ
Դառըն ողբի ձայներով։

Նոր Սիօնի անբա՛ղդ որդիք,
Շուրջ հաւաքուած երգեցէք.
Հանգած օջախ, սուրբ հայրենիք
Աղի լացով թնդացրէք։

Ես կը փշրեմ քնարն ոսկի,
Թէ որ նորա լարերից
Երջանկութեան ուրախ երգի
Թռչեն ձայներ ոգելից։

Մենք պիտ ողբանք, մինչև բացուի
Անամպ երկինք նոր գարնան,
Սուրբ հայրենեաց նորոգ կեանքի
Մկրտութեան Յորդանան . . .





## ԿԵԱՆՔ

Որպէս մի անուրջ դու պիտի անցնես,
Լոկ ունայն տեղը յուզելով արիւն.
Ամէն քաղցրը իղձ դու պիտի տանես,
Անհոգ բերկրութիւն, և սէր, և աւիւն։

Մանուկ օրերից քո յուսով ապրած,
Մենք քեզ ենք սպասում անձուկ կարօտով.
Բայց միշտ թռչում ես դու թևեր առած,
Եւ մենք միշտ նոյնն ենք խորտակուած սրտով։

Չնչին վշտերով միշտ քո տառապանք՝
Արժանի էլ չեն երբէք վեհ հոգու,
Վայելքըդ ու ժամ՝ միայն զառանցանք
Կարող են լինել տհաս պատանու։

Տո՛ւր մշտականաչ հրաշագեղ գարնան
Վառ, երանաւէտ, անանց երազներ.
Թող մենք անձնատուր մի անհուն զգացման
Անվիշտ քուն լինենք օրեր, տարիներ.

Կամ բնց մեզ մարտի ազատ ասպարէզ,
Անշղթայ ձեռքով չարի հետ կռուենք—
Կամ անմահութեան փառք պսակէ մեզ,
Կամ ինչպէս ճճի՝ ոտի տակ կորչենք . . .





* * *

Իմ խեղճ հայրենիք, անփառք վիճակիդ
Ոչ ոք ցոյց տուաւ ցարդ կարեկցութիւն.
Երկար սպասեցի փրկութեան օրիդ,
Եւ միայն տեսայ աւեր, բռնութիւն . . .

Եւ մենք քարասիրտ՝ արիւնըդ տեսանք—
Հոսում էր կաթ-կաթ անվերջ տարիներ.
Եւ միթէ հիմա մենք պիտի մընանք
Երգելու դառըն սև մահուան ողբեր։



* * *

Արագն էկաւ լափին տալով,
Ժէռ քարերին, ափին տալով.
Ո՞րտեղ թաղեմ ես իմ դարդը,
Ջոր գլուխըս տափին տալով։

Ա՛յ իմ Արագ, ջուրըդ վարար,
Սիրուն եարիս եարաբ տեսա՞ր.
Ես չըճասայ իմ մուրազին,—
Արա՛գ, եարաբ կարօտս առա՞ր։

Ամպերն ընկան Մասիս սարին,
Կարօտ մնացի ես իմ եարին.
Սատօծ սիրես, էրւած սրտիս
Ջուղաբ բերես էկող տարին։

Գիշերն անքուն գիր կըգրեմ,
Արտասունքս գետ կըշինեմ.
Արա՛գ, ծէգը ջրիդ չառած՝
Իմ սև դարդը քեզ կը բերեմ։



Կ'ասեմ՝ շողքը քարին ընկաւ,
Կըրակըն իմ սրտին ընկաւ.
Կամար ունքից, թուխ աչքիցը
Ցաւն իմ ջիւան ջանին ընկաւ։

Արագն էկաւ լափին տալով,
Ժէռ քարերին, ափին տալով,
Ո՞րտեղ թաղեմ ես իմ դարդը,
Ջոր գլուխս տափին տալով․․․



## ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆ

. . .

Յիշում եմ, սիրուն գիշեր էր գարնան.
Լուսին և աստղեր մեզ ժպտում էին . . .
Մի զմայլեցուցի՛չ, նազելի՛ զգացման
Անձնատուր եղած՝ լուռ էր իմ հոգին։
Նոր սիրտըս զարթած՝ ես սպասում էի
Սիրոյ առաջին քնքուշ բերկրութեան,
Եւ յուզւում էի, և դողում էի
Ամէն հրապոյրքից վառ գեղեցկութեան։

Եւ ես յիշում եմ—ձեռըս սեղմեցիր
Այն սիրուն գիշերն առաջին անգամ.
«Ես քոնն եմ,—զողարիկ ձայնով ասացիր,—
Ուխտում եմ, կեանքս էլ քեզ պարգև ես տամ»։
Քո մատաղ ձայնիկն իմ հոգին այրեց.
Ես ճանաչեցի այն օրն ինձ աստուած.
Դըրախտի նըւագ ականջիս հնչեց—
Սիրոյ հրեշտակն է,—սիրտըս ինձ ասաց։



Յիշո՛ւմ եմ—տխուր գիշեր էր աշնան.
Մենք նստած էինք մենակ սենեկում.
Եւ դու ինձ համար շունչ էիր գարնան,
Թէև դուրսը ցուրտ՝ անձրև էր մաղում։
Այրուող շրթունքիս համբոյրներ տալով
Շշնջում էիր դու ինձ ոգելից.
«Մենք երջանիկ ենք, հոգեա՛կ, մեր սիրով
Աւելի քան թէ անմահներն երկնից» . . .

Ժամանակն անցաւ, դու երջանկացար.
Մենակ մընացի ես իմ վշտի հետ . . .
Տանջուող ընկերիդ դու շուտ մոռացար,
Եւ իմ երազներ չքացան անհետ։
Քեզանից սիրուն տեսայ շատերին,
Բայց ուրիշ մէկին սիրել չկարացի.
Սիրտըս դատարկ է. անցած օրերին
Ես «մընա՛ս բարև» արդէն ասացի . . .



* * *

Ինչպէս քաղցր երազ օրերդ կ՚անցնեն,
Խանդըդ կըմարի, ինչպէս գիշերուան
Մի ձայն մեռանող, հոգուդ կըպատեն
Ամպերը մռայլ գուր երկբայութեան։

Ինչպէս մոլորուած մենակ ուղեւոր
Յանկարծ կըկանգնես և հարցում կը տաս.
«Ա՛խ, դու ո՞ւր թռար, իմ օր փառաւոր.
Բա՛ղդ, ինչ ճանապարհ ինձ պիտի ցոյց տաս»...

Եւ նոր կըտեսնես, թէ ինչպէս անցան
Անպտուղ, անմիտ քո կեանքի օրեր,
Աննկատելի ինչպէս ծուխ դարձան
Վառ սրտիդ, մտքիդ բոլոր ցնորքներ։

Եւ ուշ կը տեսնես, թէ քո առաջին
Ո՞րչափ մեծ գործ կար արուեստեան դաշտում,
Եւ ինչպէս գետին գլորուած կաղնին
Կը մընաս մենակ, յուսահատ, տրտում . . .

⁂



* * *

Արի՛, իմ հոգեակ, իմ գիրկը արի՛,
Կախարդի՛ր դու ինձ բոցոտ աչերով.
Անուշ պատրանքով անցնի օր, տարի—
Եւ չը յագենամ քո համբոյրներով։

Գըլուխըս կուրծքիդ՝ վառ աչքիդ նայեմ,
Թող ինձ նախանձեն անմահներն երկնից.
Մի ժպտիդ համար ես կ՚հրաժարուեմ
Առանց զղջալու բոլոր աշխարհից։

Ո՛չ փառքը նորա, ո՛չ անարգ ոսկին
Գրկախառնութեանդ և ոչ մի վայրկեան
Երբէք չեն արժիլ, հոգեա՛կ իմ անգին։

Արի՛, կախարդի՛ր, թէև վաղանցիկ,
Բայց քաղցր երազով ոգևորութեան,
Ո՛հ, դու իմ մանուկ դշխո՛յ գեղեցիկ։

## ՏՂՄՈՒՏ

Մըտաւ արև. Աւարայրին մութ պատեց,
Սև ամպերով երկնից դէմքը քողարկուեց.
Բընութիւնը մի քուն մըտած հեշտասէր
Վայելում է անուշութեան վառ ժամեր:

Չէ նըւագում քաղցըր սրինգն հովուական,
Թռչունների քնքուշ տաղեր լռեցան.
Ծաղիկները նիրհած փափուկ մարգերում
Երբեմն մեղմիկ հովի հետ են համբուրւում:

Բայց այդ քունը մօտ չէ գալիս հեշտագին
Ծեր Տղմուտի արիւնակոխ աչքերին
Այն սև օրից, երբ որ կուրծքը կուսական
Ողողուեցաւ արիւնովը հայութեան:

Անցան դարեր. դեռ Տղմուտը հեծելով
Գիշերները խանգարում է անվրդով
Աւարայրի անուշ քունը, և չունի
Մինչև այսօր նա ողբակից իւր վշտի:



Եւ ծերունին հառաչում է սըգաւոր.
Արիւն դարձած կոհակները ալեոր
Գընում, գալիս, զարնւում են ափերին,
Անցած փառքը յիշեցնում են հայերին:

«Ձեր նախնեացը էլ չէք նըման դուք, հայեր,
Չունիք այլ ևս հայրենասէր այն ոգին.
Նոքա մեռան, և կուրծքերը անվեհեր
Արեամբ բուսած անմահ վարդեր պսակեցին:

Նոքա զըլուխ չըտուեցին բռնութեան,
Ջըծախեցին նոքա խիղճը և ամօթ,
Ազատութեան երկրպագու կանգնեցան,
Հաւատալով փառքի լուսոյն անաղօտ:

Եւ անթառամ զարդարուեցան պըսակով,
Անմահացաւ այն վեհ հոգին արութեան.
Եւ հայրենեաց կեանք տուեցին արիւնով
Անհեղ մարտի դաշտում հայ մարդ, հայ կուսան:

Դո՛ւք ի՞նչ արիք, դուք, փառաւոր նախորդաց,
Ստրուկ ծընած, անփառք սընած զաւակներ.
Հայ սար, հայ գետ, հայ դաշտօրայք շունչ առած
Պիտ ամօթով այրեն ձեր սև երեսներ:

Ազատութեան սուրբ պատկերը կործանած,
Դուք ծաղրում էք ազատասէր ըզգացմունք.
Նոր Յազկերտի անարգ բագին էք կանգնած
Եւ խայտառակ կատարում էք պաշտամունք:

Ո՛հ, թէ ընէր կորած մոցուած դամբանից
Վարդանների առիւծական այն հոգին,
Եւ երկաթի խարազանը թունալից
Տար ձեր ժպիրհ, ամօթապարտ ճակատին,

Եւ արցունքով համբուրէիք սուրբ շիրիմ,
Ուխտ կապէիք նորից խաչով ու սրով
Կանգնեցնել Նոր Արտաշատ, Խոխոցիմ,
Վերջ տալ անարգ այս վիճակին արիւնով»...

Եւ Տղմուտը հառաչում է սրգաւոր.
Արիւն դարձած կոհակները ալեոր
Գրնում, գալիս, զարնուում են ափերին,
Անցած փառքը յիշեցնում են հայերին։

Անցան դարեր. դեռ ծերունին հեծելով
Գիշերները խանգարում է անվրդով
Աւարայրի անուշ քունը, բայց չունի
Նա ույժ քունը խանգարելու հայերի . . .





ԶԻՆՈՒՈՐԻ ՄԱՀԸ

Ես մեռանում եմ, ո՜վ մայր հայրենիք,
Կարմիր արիւնով անվեհեր կուրծքիս
Ներկելով սուրբ հողդ, և թող քո որդիք
Զողրան իմ մահը, երբ քաջ գինուորիս
Թափած արեան տեղ պիտի բուսանին
Ո՛չ փուշ ու տատասկ, այլ կարմիր վարդեր,
Եւ այդ վարդերից փնջեր պիտ հիւսուին
Պսակելու զոհուած ազնիւ գլուխներ։

Եւ թող ես գրկած կուրծքը մայրենի,
Քո ազատ կուրծքը, սիրո՜ւն հայրենիք,
Քընանամ մինչև ականջիս հասնի
Քո ազատութեան անուշ աւետիք.
Ես այն ժամանակ կ՚ելնեմ և պայծառ
Արևոտ տեսած՝ իմ բաղդը կ՚օրհնեմ,
Որ, իմ հայրենիք, միայն քեզ համար,
Քեզ համար միայն կեանքըս զոհել եմ . . .



* * *

Տեսնում եմ ահա—ազգեր են մեռնում,
Ազգեր են ծնւում, և արմաւենին
Սուրբ ազատութեան՝ դողդոջուն ձեռքում՝
Բաղդն է մօտենում մատաղ ազգերին։
Եւ նախնեաց փառքը նոր արշալուսով
Ցոլում է նոցա պայծառ ճակատին,
Եւ ահեղ կռւում արիւն քրտինքով
Վաստակած անմահ աճում է դափնին։

Եւ միայն դու ես, իմ խեղճ հայրենիք,
Որ շղթայակապ հեծում ես դարձեալ,
Եւ պատառ պատառ կուրծքըդ գեղեցիկ—
Ընկած ես որպէս կենդանի մեռեալ...
Եւ անցած փառքիդ աւերակներից
Փրկութեան ոստը դեռ չէ կանաչում,
Կրծքիցըդ հոսած արեան շիթերից
Քո տանջանքների փունջըն է ցօղում։



Բայց, իմ հայրենիք, դու պիտի չմեռնիս.
Ես հաւատում եմ յարութեան օրիդ.
Մօտ է ժամանակ, զարթիր, սիրելիս,
Փրկութեան ոստը վառւում է ճակտիդ։
Ոտքի ել, հոգիս, շղթադ թօթափիր,
Աչքըդ բաց արա այդ մահուան քընից.
Թէև մահամերձ, դու մի ձայն հանիր—
Որդիքդ օգնութեան կըգան չորս կողմից։



* * *

Կար մի ժամանակ, երազում էի—
Թէ պիտի գտնեմ անդուլ վաստակով
Ես հանգիստ, որին կարօտում էի
Տանջուած, վշտաբեկ, անհուն փափագով։

Անցան տարիներ. չկայ վայելքի
Նախկին բոցավառ անուշ ցանկութիւն,
Չկայ սրտառուչ հրապոյրքը ցնորքի,
Որով միշտ քաղցր է ծաղիկ մանկութիւն։

Սիրտս դատարկ է. ոչ կեանքի հոգսեր,
Ո՛չ աշխատութիւն չեն կարող ինձ տալ
Այն իմ կորուսած ոսկի երազներ,
Մատաղ օրերիս սիրուն իդէալ։

Եւ կեանքը ահա մի վայրի անտառ,
Ուր ես մոլորուած քայլերս եմ ուղղում,
Առանց տեսնելու մի նշոյլ պայծառ,
Ուր միայնութիւնս եմ միայն ողբում։



Իբրև մի նաւորդ ալեաց երեսին
Գրնում եմ անյոյս, վշտերից ընկճուած…
Եւ պիտի հասնեմ մի օր փարոսին,
Կեանքի կատաղի հոսանքից փրկուած։



## ՏԻՐԱՄԱՅՐ

Մինչ շուրջս աշխարհի ունայն հոգսերով
Վխտում է ամբոխն անմիտ ու դատարկ
Եւ զուարճանում է առօրեայ փառքով,
Մինչ փողը դարձեալ նա ստրուկ է անարգ.
Մինչդեռ մրցելով եռում են կրքեր,
Մէկին ստոր անկում, միւսին յաղթանակ
Պատրաստել կամին անմաքուր ձեռքեր,
Լոկ շահախնդիր մարտի ընդունակ,—

Ես աշխարհ մոռցած, հեռու աղմուկից,
Կանգնած եմ առջեւդ, ո՛վ սուրբ Տիրամայր.
Ականջս ազատ է մարդկան շշուկից
Սիրոյ բարբառըդ լսելու համար։
Աչքս սեւեռած լուսաւոր դէմքիդ՝
Կամիմ թախծալից հայեացքդ կարդալ․․․
Գիտեմ, ողբում է այդ սիրող հոգիդ
Արեան մէջ խեղդուող մարդկութիւնն անկեալ։



Պայծառ ամպերի, հրեշտակների մէջ
Կանգնած ես երկնից փառաց թագուհի,
Պըսակուած լուսոյ պըսակով անշէջ,
Դու կարեկցութեամբ երկրիս հովանի։
Մաքուր բերկրութեամբ լի է իմ հոգին.
Ծունկ եմ խոնարհում ահա քո առաջ,
Սուրբ գեղեցկութեան տիպար երկնային,
Կենդանի սիրոյ մայր լալահառաչ․․․



*
* *

Ճեմում էի բուրաստանում,
Առաւօտ էր մայիսեան,—
Խնդում էի, զուարճանում,
Ուրախակից բնութեան։

Անհոգ խաղով ես մօտեցայ
Քնքուշ բացուած ալ վարդին.
Անուշ հոտից չկշտացայ,
Զմայլեցայ ալ վարդին։

Մէկ էլ տեսայ՝ մատաղ կուրծքին
Զազիր որդն էր բուն դրել.—
Վա՜յ նազելի իմ ալ վարդին,
Կեանքի թելն էր կտրուել։



*
* *

Անցի՛ր, սեւ ամպ, դու իմ սրտից.
Բացուի՛ր, երկի՛նք կապուտակ.
Տխուր, խաւար թուխպի միջից
Ցոլա՛, գարնան արեգա՛կ։

Թող պատառուի այս ցուրտ ձմրան
Սգոյ հանդերձ տաղտկալի,
Եւ շողշողայ մանուկ բնութեան
Ոսկէ ժպիտ ցանկալի։

Եւ բերկրութեան արտասուքներ
Այս լեռներից թող հոսեն.
Թարմ կանաչին ջինջ առուակներ
Քաղցր աւետիք թող խօսեն,

Թէ մայր երկիրն ազատուեցաւ
Իւր կուռ, ճնշող կապանքից.
Նոր ցնծութեան երգ լսուեցաւ
Հէք արտուտի բերանից . . .

## ՄԱՆԿԱՆԸ

Երանի՛ քեզ, անհո՛գ մանուկ,
Դու անարա՛տ, դու դեռ անբի՛ծ,
Դեռ չըբացուած գանձ ես ծածուկ,
Մաքուր շող ես գարնան երկնից։

Դու հաւատով դիմում ես կեանք,
Եւ սպասում ես երջանկութիւն․
Եւ քեզ համար կեանքի տենչանք
Որպէս մի վարդ կամ երգ սիրուն։

Դու չըգիտես թէ ի՛նչ վշտեր
Խռովում են սիրող հոգին,
Դու չես տեսնում թէ ի՛նչ փշեր,
Բուն են դրած վարդի միջին։

Դու կը տանջուիս և կ՚իմանաս,
Ինչ է կեանքի դառն արտասուք,
Կանցնի՜ն օրեր, և վերահաս
Կը գայ թախիծ, սիրո՛ւն մանուկ . . .



Բա՛յց և դարձեալ քեզ երանի՛․
Դու ապրում ես, ես ապրեցայ․
Դու դեռ գարնան այգ գեղանի,—
Իմ վերջալոյսն մօտ է ահա . . .



## 14 ՅՈՒՆՈՒԱՐԻ 1895 Թ.

Ամենայն անգամ, երբ աչք եմ ձգում
Առաջիս դըրած չքնաղ պատկերին,
Բերկրութեամբ լցւում է հոգիս արտում,
Եւ կեանք է տալիս հաւատն իմ մաքին։

Եւ ասում եմ ես—Ահա մարմնացեալ
Ե՛ւ Հաւատ և՛ Սէր. թւնով չարութեան
Ապառաժ դարձած կարող են դարձեալ
Փափկել հայ մարդիկ գութ մոմի նըման։

Եւ այս օրերում, երբ մենք անխարդախ
Կարօտ ենք սիրոյ, կարօտ հաշտութեան,
Երբ մենք միմեանցից աներկբայ, անվախ,
Իրար պիտ մեկնենք բազուկ միութեան,

Մեր աճելութեան սառոյցն հալցնել
Կարող է միայն այն սիրոյ կըրակ,
Որ այս կրծքի մէջ Աստուած է վառել,
Առաքելութեան որպէս սուրբ կըտակ։



Եւ այս կենդանի Հաւատն է միայն,
Որ մեզ ապրելու տալիս է խրախոյս
Այն քաղցր յուսով, թէ վերածնութեան
Հեռու չէ և մեր պայծառ արշալոյս։



* * *

Մի՛ վհատիր, եթէ աւեր
Եւ սուգն ընկաւ քեզ բաժին.
Թող սարկութեան մռայլ գիշեր
Ահ չբերէ քո սրտին։

Թէ երգէ անուշ սուրբ բերկրութեան
Էլ տեղ չունի աշխարհում,
Թէ չըթայի հիմա դաժան
Շաչիւնն է լոկ քեզ հասնում,

Մի՛ վհատիր, էլ սպարէզ,
Ա՛ռ եօթնաղի քո քընար
Եւ տանջանքի օրհներգ տուր մեզ,
Ողբի աղբիւր մեզ համար։

Կամ թող հնչեն հզօր լարեր,
Որպէս փողը յաղթական,
Թնդան ուժգին թմրած սրտեր,
Փայլի սուրբ խաչ վկայութեան...



Եւ քո ձայնը թող որոտայ,
Ինչպէս ամպրոպ խաւարում,
Թուխպը ցրուի, փայլակ ցոլայ
Արեամբ փրկուած աշխարհում։



*
* *

Բացուեցաւ գարուն.... Հոգիս բերկրութեամբ
Սլանում է վեր, այնտեղ՝ ուր սիրով
Ծիծաղում է ինձ մի երկինք անամպ
Ոսկի արևի պայծառ շողերով։

Կ'ուզէի երգել, քաղցր ու ներդաշնակ,
Կորովի ձայնով, և վառել սրտեր,
Որ երգըս, որպէս գարնան յորդ վտակ,
Սար, դաշտ ու անտառ, ձորեր թնդացնէր։

Եւ իմ նըւագած յուսոյ մեղեդին
Նոր կեանքի գարուն կ'աւետէր մարդկան,
Եւ մաքուր հաւատն, ինչպէս շող այգին
Կը ցրուէր խաւարն մռայլ գիշերուան։

Ես սէր կ'երգէի, բայց և ազնիւ մարտ . . .
Այլ, ա՜խ, ցրտերից խամրեցաւ գարուն,
Թօշնեցաւ սրտիս անուշ կոկոն վարդ,
Կապուած է և լուռ վտակ կարկաչուն։



*
* *

Դարեր եկան, դարեր անցան, էջմիածի՜ն,
Քո հիմն անշարժ ու անսասան, էջմիածի՜ն.
Ձես ձեռակերտ դու մարդկեղէն ու առօրեայ,
Դու շողակաթ լուսոյ խորան, էջմիածի՜ն։

Խաւարի մէջ դու վառուեցար որպէս կանթեղ,
Վառ պահեցիր մեր սրտերում կայծն երկնային.
Անփառունակ սորուկ երկրի դու լուսադեղ
Անշէջ փարոս ազատութեան, էջմիածի՜ն։

Ցրուած հօտի դու ժողովող անքոյթ փարախ,
Հաստատ լինի թող մեզ վերայ քո հովանին.
Գըրիգորի սուրբ օրհնութեամբ ծաղկի՜ր խաղաղ,
Փառք, ապաւէն մեր անընման, էջմիածի՜ն։

## ԵՐԱԶ

Տեսայ՝ իջաւ խաղաղութեան դիցուհին,
Զքնաղ, որպէս մատաղ գարուն ծաղկաւառ.
Տուել էր արևն փայլը նորա աչերին
Եւ շուշանի ճակատըն էր հաւասար։

Իջաւ, բերեց իւր հետ բուրմունք եդեմի,
Եւ ջերմութիւն, և յոյս, և երգ մայիսեան.
Ձեռին բռնած կանաչ ոստիկ ձիթենի,
Շարժեց օդում, դարձաւ ասաց նա մարդկան.

«Թող մեծ սիրոյ և հաշտութեան շողերից
Ձեր միտքը ոյժ, սրտերը գութ ընդունեն.
Անցնէ ձմեռ, և նոր գարուն լուսալից,
Կենաց գարուն, թմրած հոգիքն ողջունեն։

Զարն հեռանայ, և ձեր աչքից արտասունք
Հոսէ որպէս մաքուր վտակ յորդառատ.
Ամանորայ բարեաց փթթին ձեզ ծաղկունք՝
Յոյս կենդանի և հաստատուն միշտ հաւատ»։



Բայց... զարթեցայ, և ո՛չ բուրմունք եդեմի,
Ո՛չ ջերմութիւն, ո՛չ լոյս, ո՛չ երգ մայիսեան...
Ե՞րբ մեզ համար պիտ կանաչի ձիթենի,
Ա՜խ, ո՞րն արդեօք կ՚լինի տարի նոր գարնան։



* * *

Հեզիկ կարկաչով վազում են ալիք,
Փարում, փայփայում ափերը կանաչ.
Ջրերի վերայ կախուած ուռենիք
Նոցա հետ խօսում են լալահառաչ:

«Մի՛ վազէք, ալի՛ք, կացէ՛ք, կոհակնե՛ր.
Մի՛ թողնէք չքնաղ այս վայրն հանգստեան
Եւ վայելեցէք քաղցրութեան ժամեր,
Մինչ ժպտում է ձեզ շողն արեգական:

«Ա՛խ, դուք չէք տեսնում, կ'անցնէք այս բլուր—
Եւ կը պղտորի ձեր ջուրը վճիտ.
Այնտեղ ա՛յլ երկիր, ա՛յլ ափեր տխուր,
Այնտեղ կը գրկէ ձեզ արեա՛ն հովիտ:

«Այնտեղ հողն արիւն, արիւն են սարեր,
Ջինջ աղբիւրներն էլ կարել են արիւն.
Վտակը քերում արիւնոտ քարեր,
Թառամեցնում է ծաղկավառ գարուն:



«Դողում է երկինք սև շաչիւնից,
Մթնել են ոսկի արևի շողեր.
Ո՛հ, մի՛ հեռանայ, սիրու՛ն գետ, մեզնից,
Մի՛ վազէք, ալի՛ք, կացէ՛ք, կոհակներ» . . .

Բայց . . . մռայլեցաւ երեսը գետին.
«Իմ քոյր, եղբայրն են այն ակն ու վտակ»—
Գոչեց, զարկուեցաւ սառած ափերին
Ու յառաջ անցաւ կոհակ առ կոհակ:



## Գ Ա Ր Ո Ւ Ն

Մի նոր, հրաշալի կեանքով շունչ առած
Ժպտում է բնութիւն, գերդ մանուկ չքնաղ·
Եւ նոր զօրութեամբ երկիրն է զարթած,
Եւ երկինքն յստակ ու գեղածիծաղ։

Այս խորհրդաւոր պահուն ես մենակ
Ծնկաչոք անձ քեզ եմ աղօթում,
Խաչեցեալ Փրկիչ, Քո հովանու տակ
Ցաւատանջ սրտիս իղձերն եմ բերում։

Թող այս բերկրալից գարնան ջերմ արև
Իմ հայրենի տան վերայ էլ փայլի·
Մի օր, գէթ մի օր թող Քո առաջև
Այնտեղ հէք ծիծռան օրհներգը լսուի,

Թէ անցաւ և մեր ձմեռ ցրտաշունչ,
Թէ անպարտ արիւնն հասցրեց վարդեր,
Եւ տառապելոց ողբերն ու տրտունջ
Դարձան գոհութեան խաղաղ մաղթանքներ։



## ՓՐԿՈՒԹԵԱՆ ԽԱՉԸ

Սիրտս վշտահար, մոլորուած մտքով,
Նայում եմ առաջ, դիտում եմ հեռուն,
Եւ հարցնում եմ՝ վրհատած հոգով,
Թէ ուր պիտ հասնի մեր նաւն երերուն։

Ալեծուփ ծովին դարձած խաղալիք
Եւ խաւարի մէջ կորցրած ուղին,
Առաջ ենք գնում՝ վաստակած, լռիկ,
Հլու հնազանդ մեր ճակատագրին։

Եւ տեսնում եմ ես, ամէնքս խոնարհ,
Մի յուսով միայն չենք ընկճուում ցայսօր·
Այդ մեր փրկութեան խաչն է լուսավառ,
Մեր յաւէտ անշէջ փարոս դարաւոր։

Սևաթոյր երկնից մռայլ երեսին
Փայլել է նա միշտ, երբ յուսոյ մի շող—
Սիւն կենդանութեան, Մայր Էջմիածին,
Տարագիր հօտի արթուն ժողովող։

## ՍԳՈՑ ՕՐԵՐ

Թէ ոգևորուել կարող ես կրկին,
Թէ կարող ես դեռ կըրակուիլ վշտից,
Սիրտ իմ չարատանջ, այս սուգն անապին
Հերիք է, որ դու պատառուիս ցաւից։

Բարդ բարդ կուտակուած ամպեր քո գլխին,
Սորանից էլ սև կը լինի՞ թախիծ . . .
Ա՜հ, թող արտասուքն իմ մարած աչքից
Հեղեղի նման թափուի դառնագին։

Թէ՞, սիրտ իմ, դու դեռ այնքան աննկուն,
Որ այս ցաւին էլ պիտի դիմանաս.
Թէ՞ այնքան է դեռ քո յոյսն հաստատուն,

Որ սպասում ես, թէ կը շողայ արև,
Նոր ոյժ ու նոր կեանք դարձեալ կ'ստանաս,
Դարձեալ կը ծաղկի գարուն քո առջև . . .





## ԽԱՉԻ ՆԵՐՔՈՑ

Գիշերուան այս սև, անուելի խաւար
Զըվնատեցնէ թող քեզ, իմ եղբայր.
Վար աւետաբեր օրուայ է նշան
Այդ արշալուսի ընկերն անբաժան։

Չե՞ս տեսել, ինչպէս մռայլ փոթորկին
Յաջորդում է միշտ լուսագեղ երկին,
Եւ քաղցր ժպտով արևը պայծառ
Գգուում է կրկին սար, դաշտ ու անտառ...

Խաչիդ տակ ճնշուած դարձեալ դու յուսա—
Փրկութեան քո ժամն անշուշտ պիտի գայ.
Արեամբ ներկուեցաւ առաջ Գողգոթան,
Ապա թէ ծագեց սուրբ օրն յարութեան։



## ՄԱՅՐՍ

Հոգեմաշ ցաւով ամենայն գիշեր
Ես քուն եմ մտնում արտասուքն աչքիս,
Եւ խուլն երամով տանջող պատկերներ
Շուտ պաշարում են տառապեալ հոգիս...
Մենակ ապրեցայ կարօտ գգուանքի,
Փորձով ես ուսայ խորհուրդը կեանքի,
Օրըս սևացաւ այրող կրքերից,
Զրկուայ երբէք մի սիրտ կարեկից։

Եւ քուն եմ մտնում ամենայն գիշեր
Արտասուքն աչքիս, հոգեմաշ ցաւով—
Հանգիստ չեն տալիս սև սև պատկերներ,
Որ պաշարում են ինձ խուլն երամով...
Եւ ահա դու ես, որ ինձ այդ պահուն
Երևում ես, մայր, պսակով զարդարուն.
Դու գրկում ես ինձ սիրով կաթոգին,
Գոչում ես՝ «որդի՛» ձայնով անմեկին։



Եւ տեսնում եմ ես քո փշեայ պըսակ,
Խոցերով ծածկուած քո սիրուն ճակատ,
Եւ մի թափանցիկ նուրբ շղարշի տակ՝
Կուրծքիցըդ հոսող արիւնը կաթ-կաթ։
Աչքդ աղերսալի տեսնում եմ վերաս,
Կանչում եմ քեզ «մայր» ես ձայնով նըւաղ,
Եւ կրկին ընկնում անքուն, վշտահար—
Ա՜խ, մայր, ի՞նչ անէ որդիդ քեզ համար...



* * *

Եւ եկաւ գարուն, և անցաւ ամառ,
Բայց ես չտեսայ մի պայծառ արև,
Եւ կարկաչահոս վտակը կայտառ
Լոկ արեան շիթեր ցայտեց իմ առջև։

Եւ եկաւ թռչունն իմ հայրենի տան—
Լալաձայն ողջոյն առայ նորանից.
Ա՜խ, ողբով եկար, կռո՛ւնկ սիրական,
Եւ անջատուեցար ողբով ինձանից։

Թօշնեցան ծաղկունքն իմ անոյշ երկրի,
Սառոյցը կապեց արինոտ վտակ.
Էլ պիտի ծաղկի՞ կուրծքը սարերի,
Արդեօք կը տեսնե՞մ աղբիւրներն յստակ...

Երանի՜ մէկ էլ աչքս բանայի,
Եւ դու, իմ շէն տո՜ւն, այժմ գերեզմա՜ն,
Աւետաբերիդ ես ընդունէի,
Լսէի օրհներգ քո վերածնութեան։



* * *

Երբ լսում եմ ես, այս վիշտն անգին
Հանգիստ չէ տալիս իմ տանջուած հոգուն.
Սիրտըս կտրատում, մաշում են կրկին
Այս լացն ու հառաչ, յուսահատութիւն։

Եւ ասում եմ ես. յանցանք է լսել,
Երբ այսչափ մեծ է և անծայր չարիք.
Մի՞թէ պիտ սպասենք, որ մեզ անարգել
Հասնէ և վերջին ահռելի մրրիկ։

Եւ խօսում եմ ես. բայց էլ չի հնչում
Գարնան ցնծալից իմ հին մեղեդին...
Ես էլ միայն կոծում, միայն հառաչում—
Իմ լացն եմ խառնում ընդհանուր ողբին։



## ՍԱՐՆ Ի ՎԵՐ

Դէպի վե՛ր, դէպի վե՛ր . . . Անվերջ է ուղին.
Յոգնեցան բազուկներս՝ այս կռուումն անզօր,
Սպառեցաւ և վերջին ոյժն էլ ծնկներիս—
Դէպի վե՛ր, սարն ի վե՛ր, քաջասի՛րտ զի՛նուոր։

*
* *

Աւելի կարծրանան թող այս սև ժայռեր,
Աւելի թող սպառնայ անդունդն ահաւոր,
Դեռ շունչ կայ բերանումս, շարժւում են
ձեռքեր—
Դէպի վե՛ր, սարն ի վե՛ր, ո՛վ արի զի՛նուոր։

*
* *

Դեռ հեռու է կատարն անամպ ու յստակ,
Բայց եթէ չը հասնենք այնտեղ մենք այսօր,
Վաղն այնտեղ ենք անշուշտ, մերն է յաղթա-
նակ—
Դէպի վե՛ր, սարն ի վե՛ր, անվեհե՛ր զի՛նուոր։





*
* *

Հաւատում եմ—մեռնելու չէ սուրբ գաղափար,
Եւ անմահ է, որ մեռնում է նորա համար.
Հաւատում եմ—չկայ ոչինչ յաւերժական,
Բայց սուրբ գործի ոյժը գիւթիչ՝ չունի՛ վախճան։

Մի՛ վհատի՛ր, յառաջ գընա՛, անբախտ եղբայր.
Թող խորտակուի բաց ովկիանում նաւդ հողմա-
վար,
Թող գայրանայ գլխիդ մրրիկ ահեղաշունչ
Եւ մոլեգին կլանէ յորձանք դիդ անմռունչ . . .

Բայց հաւատա՛, դու չես յաղթուած, ոչ ոյժն
յաղթող—
Եւ նոր քաջեր կ'ելնեն անշուշտ քեզ յաջորդող,
Եւ կը գրաւեն նոքա այն ափը ցանկալի,
Եւ նոր այնտե՛ղ փայլը փառքիդ կը բորբոքուի։

Թող աւերուի հայրենի տունն հիմնայատակ,
Բայց քանի հուրն առկայծում է դեռ մոխրի տակ,
Նորա կորուստն, ո՛հ, մի՛ ողբալ դու սգաւոր—
Իբրև փիւնիկ նա կը յառնէ անշուշտ մի օր . . .



* * *

Չունիմ քեզ համար, ընկեր թանկագին,
Սրտառուչ, քաղցրիկ վաղեմի ձայներ.
Ա՜, բեկբեկ լարերն իմ խեղճ քնարին
Շուտով սորվեցան երգել սև օրեր։

Կռիւ է այս կեանքն, և այդ կռուի մէջ
Ո՜րքան անպատրաստ, տկար մեր ոյժեր.
Բայց մենք գնում ենք մի յուսով անվերջ
Եւ չունինք ոչինչ մենք այլ քաջալեր։

Նոյն տկարութեամբ մենք ոտք ենք կոխում
Ահա նոր տարին, և առաջներիս
Մեր նոյն առաջնորդ աստղիկն ենք տեսնում—
Այդ լոյսն է, աղօտ դեռ լոյս է տալիս։

Եւ քանի վառ է, չէ հանգել կրակ,
Յառաջ, միշտ յառաջ, ընկեր թանկագին.
Կեանքն իբրև հեղեղ՝ կոհակ առ կոհակ
Շարժուում է, փրկում միայն քաջերին։





* * *

Կուզէի հնչէր տաւիղս մեղմիկ
Սրտառուչ նուագ, անուշ դայլայլիկ,
Եւ վառէր սրտեր սիրոյ կրակով
Դիմել դէպի գործ միաբան հոգով։

Կուզէի հնչէր իմ փողն ահարկու,
Թնդացնէր սրտեր իւր ձայնովն հուժկու,
Քնածը զարթնէր, թոյլն արիանար
Կռուելու ցմահ սուրբ գործի համար։



## ՆՈՐ ԳԱՐՈՒՆ

Քեզ ըսպասող չըմընաց,
Ո՞ւր ես գալի, ա՛յ գարուն.
Գովքըդ ասող չըմընաց,
Զուր ես գալի, ա՛յ գարուն։

Սև-մութ պատեց աշխարհին,
Սար ու ձոր դառան արին,
Մեզ վայ բերեց էս տարին—
Ո՞ւր ես գալի, ա՛յ գարուն։

Բուլբուլը գայ՝ թող ձէն տայ,
Էլ ո՞վ պիտի քեզ խնդայ,
Էլ ո՞ր սիրտը կը թնդայ—
Զուր ես գալի, ա՛յ գարուն։

Բուլբուլն եկաւ՝ վարդ չունի,
Ծաղկոցը կայ՝ զարդ չունի.
Է՜լ ո՞վ ա որ դարդ չունի—
Ո՞ւր ես գալի, ա՛յ գարուն։



Դու ետ բերիր հաւքերին,
Ո՞նց տէր ըլնեն բըներին,
Սա՛ղ տեղ չկայ մեր երկրին—
Զուր ես գալի, ա՛յ գարուն։

Աշուղի բերանը փակ,
Սազ—քեամանչէն փակի տակ,
Սիրտն ա էրուում անկրակ—
Ո՞ւր ես գալի, ա՛յ գարուն։

Քեզ ըսպասող չըմընաց,
Զուր ես գալի, ա՛յ գարուն,
Գովքըդ ասող չըմընաց—
Ո՞ւր ես գալի, ա՛յ գարուն։



* * *

Գարնան կարկաչուն վտակի ափին
Մոլորուած մտքով ես նստած էի
Եւ նայում էի պղտոր ջրերին,
Պէսպէս ցաւերով տանջուած սիրտըս լի։

Եւ փունջը ձեռիս քրքրում էի,
Ծաղիկներն մէկ մէկ ջուրն էի ձգում,
Եւ պղտոր ալիք գարնան վտակի
Միշտ յառաջ էին անդարձ գլորում . . .

Եւ աչքըս ջրին՝ ասում էի ես.
«Կեանք, դու էլ մէկ մէկ օրերս ինձանից
Խլում ես պղտոր այդ վտակի պէս։

Ինչպէս ծաղիկներն իմ փնջի միջից՝
Անհետանում են անուշ երազներ—
Սիրտ իմ, դրախտ էիր, և դարձար աւեր»։

——*:*——



* * *

Ա՜խ, ես գիտեմ, թշուառ եղբայր,
Ծանր է խաչը ակար ուսիդ.
Ճակատագիրն, իբրև խորթ մայր,
Չէ ժպտացել դեռ երեսիդ։

Գիտեմ՝ վաղուց ես դու սովոր
Անցնել անքուն երկար գիշեր,
Եւ արցունքով, վերդ սգաւոր,
Մէկ մէկ համրել կեանքիդ օրեր։

Բայց դու գիտե՞ս, որ դեռ անվիշտ
Չէ տեսնուած մի հողածին,
Եւ չեղածի յուսովն է միշտ,
Որ տալիս ենք կեանքին մի գին։

Հաւատում ենք, թէ կը գայ օր—
Բաղդը երազ չի թուիլ մեզ,
Թէ կը բացուի նա փառաւոր
Առաւօտեան վառ շողի պէս։

Թէ կը ցամքի դառն արտասուք,
Լոյս կը դառնայ այս սև գիշեր,
Կը փարատուին կսկիծ և սուգ—
Կը գայ մայիս շընորհաբեր։





## ՃԵՄԱՐԱՆԻ ՏՕՆԻՆ

Երբ տեսնում եմ, ինչպէս պայծառ
Եւ անարատ զգացմունքով
Խմբւում ենք այս տօնի համար
Մենք գիտութեան անունով,
Վերանում են մութ կնճիռներ
Իմ ամպամած ճակատից
Եւ գէթ առ ժամ վիշտն ու հոգսեր
Հեռանում են իմ սրտից։

Եւ ասում եմ ես հաւատով.
Անհուելի չէ այս գիշեր,
Թէ որ փայլին մի ջերմ լուսով
Առաւօտեան վառ շողեր։
Եւ այս օրն է այդ առաւօտ,
Որ բացւում է մթան մէջ—
Թո՛ղ այդ լոյսը լինի աղօտ,
Միայն մնայ միշտ անշէջ։



*
* *

*Զարթիր, սիրելիս. տես գեղեցկացած*
*Ողջունում է քեզ ոսկեզօծ գարուն,*
*Եւ ամբողջ մի գրախտ, աշխարհ հրաշալեաց,*
*Ահա առաջիդ բացուած գորգարուն։*

*
* *

*Սթափուում է երկիր թմրութեան քնից,*
*Ի՛ւր այգն է տօնում վերածնութեան.*
*Եւ մի նոր կեանքի հրաւէր բերկրալից*
*Համնում է մահուամբ ազատուած մարդկան։*

*
* *

*Երգ երանաւէտ գեղգեղեց բնութիւն,*
*Կապանք խորտակած, ազատ շունչ առաւ.*
*Զարթիր, սիրելիս. ծաղկեցաւ գարուն,*
*Եւ անցաւ ձմեռ, զի Քրիստոս յարեաւ։*





*
* *

*Ամենայն անգամ, երբ ես միայնակ,*
*Հեռու աշխարհի անվերջ աղմուկից,*
*Մաքիս հետ ընկած մնում եմ սենեակ*
*Եւ նստում լքեալ, հոգիս թախծալից,*
*Սեղանիս առաջ, սիրածս անկիւնում,—*
*Թուղթ ու գրքերիս գտնում եմ, ասում.*
*«Ո՞ւր է ձեր նախկին հրապոյր թովչական,*
*Ո՞ւր գաղտնիքը ձեր սփոփիչ զօրութեան...*

*Դուք լուռ էք հիմա և իմ մաքերին*
*Չէք կարող ցոյց տալ ազատ ճանապարհ,*
*Այս անմիտ կեանքի խորհուրդն անմեկին*
*Ինձ համար դարձեալ գիշեր է խաւար։*
*Թէ՞ մի հրէշ է դա առասպելական*
*Ահեղ ու գրաւիչ, այլ անպատասխան—*
*Որպէս մի Սիրէն կախարդում է մեզ*
*Եւ թունաւորում մի նենգ օձի պէս»...*



## ՔՈ՛ՒՆ ԵՂԻՐ, ՀՈԳԵԱ՛Կ

Քո՛ւն եղիր, հոգեա՛կ, թող քաղցր նիրհով
Աչերըդ փակուին ջերմ կուրծքիս վերայ.
Սիրոյ անուշիկ մեղեդիներով
Թող մինչև նոր այդ ականջդ հեշտանայ։

Քնքուշ վարդերով ես կը զարդարեմ
Քո գլուխն ու կուրծքդ, որրան փափկութեան.
Քնի՛ր, թագուհի՛ս, մինչև լուսադէմ,
Մինչև արտասուներն երկինք սըլանան։

Եւ երբ առաջին նշոյլն ոսկէփայլ
Արևը ձըգէ կուսական դէմքիդ,
Թող քեզ զարթեցնէ իմ սիրոյ դայլայլ,
Բոցավառ համբոյրս այդ վարդ շրթունքիդ։





## Ա Շ Ո Ւ Ն

Արևը վերջին անզօր շողերով
Ոսկեզօծում է կատարը լերան.
Կանգնած է անշարժ անտառն անխռով.
Չէ լսւում արդէն ճռուողը ծիծառն...
Չորս կողմս եմ նայում. տեսնում եմ ահա
Երբեմն միայն մի տերև դեղնած
Գլորւում է տխուր ցուրտ գետնի վերայ,
Լսւում է նորա շրշիւնը մարած։

Ա՛խ, այդ վայր թափուող դեղին տերևներ
Սիրտս են գրաւում անտրտունջ ողբով.
Ինձ պաշարում են տխուր երազներ,
Միտքս երկբայութեան սքօղւում է ամպով.
Քո ծոցն եմ ձգտում, ո՛վ մայր—բընութի՛ւն,
Կամիմ հաղորդուիլ քո լուռ հանգստեան
Վսեմ խորհրդին. չէ՞ կը գայ գարուն—
Կրկին կըփայլես ժպտով մանկական...

Ինչո՞ւ կարող ես դու մահու քողով
Ծածկուել ու քնանալ անշուք ու լռիկ
Եւ յառնել դարձեալ, երբ իւր ջերմ շողով
Խաղայ ճակատիդ արեւը գողտրիկ։
Իսկ մեզ՝ որ չունինք գգուանքը կենաց,
Գրկում է շիրիմն անդա՛րձ, յաւիտեան,
Եւ մեր առաւօտ, վշտով անցուցած,
Անվերջ գիշերում առնում է վախճան . . .

Բայց սիրում եմ քեզ, հանգչող բընութիւն.
Դու մի ա՛յլ մահուան հանդերձ ես զգենում.
Եւ իմ մէջ ուժգին եռում է արիւն,
Երբ այդ սգաւոր պատկերդ եմ տեսնում . . .
Զգում եմ բերկրած, գարո՛ւնդ յիշելով,
Որ այդ ցնորք չէ, կայ անմահութիւն . . .
Եւ գիրկդ եմ ընկնում, հոգիս անխռով,
Քեզ կամիմ միանալ, ով մայր բընութիւն։





## ԶԱՏԻԿ

Տես, գեղածիծաղ զարթել է բնութիւն—
Թաւշեայ կանաչով ծածկուած են դաշտեր,
Թարմ կոկոններով ծառն է զարդարուն,
Լեռներից կայտառ վազում են ջրեր։

Ցնծութեան ձայներ լսւում են օդում.
Արեւը շողուն, երկինքն է վճիտ . . .
Բայց իմ վշտահար հոգին չէ խնդում.
Չէ փայլում դէմքիս բաղդաւոր ժպիտ . . .

Փրկիչը յարեա՜ւ. ձմրան կապանքից
Բնութիւնն ազատուած տօնում է ասես
Նորա յարութեան այս օր բերկրալից,
Սիրոյ յաղթութեան այս շքեղ հանդէս։

Բայց ի՞նչ է բերում այս օրն մեր կեանքին.
Ո՞ւր Փրկչի տուած այն խաղաղութիւն,
Որ լոյս պիտ ձգէր մեր խռովեալ հոգին,
Որ պիտ տարածէր սիրոյ ջերմութիւն . . .

Ա՜խ, ես կ՚ուզէի հանգչէին կրքեր
Գէթ վերածնութեան այս վսեմ պահուն,
Երբ շողշողում են ոսկէվառ յոյսեր,
Թնդում են սրտեր ցնորքներով անհուն։

Կ՚ուզէի տեսնել եղբայրն եղբօր հետ
Գեղեցիկ գործում ձեռք ձեռքի տուած,
Սէր և հաշտութիւն իրանց կարապետ,
Եւ սուրբ համբոյրով ի մի շաղկապուած…

Եւ այն ժամանակ կ՚ասէի ուրախ.
Մեզ էլ ժպտեցաւ գարնան արևիկ,
Ցրուեցան ամպեր—երկինքը խաղաղ—
Հայն էլ տօնում է ահա իւր Զատիկ…





ՀԱՅՐԻ՛Կ…

Փոթորիկն անցաւ. տօնում եմ ահա
Պայծառ արևի ծագումն հրաշափառ.
Աւետեաց հրեշտակն իջաւ մեզ վերայ,
Եւ նոր առաւօտ բաց է մեզ համար։

Երկար տանջուեցանք. որպէս սև գիշեր
Խաւար էր պատել մեր բիւրտ սրտերին.
Վայելենք նոր օր—ահա ջինջ եթեր
Լցուած է բուրմամբ մի եդեմային։

Վարդերն ինձ այսօր ժպտում են անոյշ,
Սոխակն դայլայլ հնչում է քաղցրիկ…
Ա՜խ, այս ինչ յոյզ է, որ այսպէս քնքոյշ
Շոյում է հոգիս,—յո՜յզ չնաշխարհիկ։

Մարած է սև կիրք, լռել է նախանձ.
Եղբա՛յր—ձայնում եմ ես իմ թշնամուն…
Ո՜հ թէ երկնային այս զգացումն անանց
Տէր մընար յաւէտ ամէնիս հոգուն։

Մի անուն միայն, մի քաղցրիկ անուն
Թող մեզ բոլորիս շաղկապէ սիրով—
Հայրենիկ… Նուիրւի և թշվառ հնչիւն,
Համակ անհուն սէր և համակ գորով։





ՎԱՐԴԱՆԱՆՑ ՕՐԸ

Այս դատարկ կեանքի անմիտ խնջոյքում,
Ուր աննպատակ անցնում են օրեր,
Ուր ամէն վառ կիրք, ամէն սուրբ զգացում
Խեղդւում են չնչին առօրեայ հոգսեր,
Ուր բաքոսական գեղխութիւններով
Մաշւում է, թօշնում ծաղիկն հասակի,
Ուր ունայն փառքի սին երազներով
Զոհւում է բերկրանքն ազատ վիճակի.

Երբ ոսկի հորթին տաճարներ կանգնած
Մենք վաճառում ենք և խիղճ և ամօթ,
Եւ նորա համար Աստուած մոռացած՝
Էլ արդարութեան չենք քաշում կարօտ,
Երբ մեր անզգայ կուրծքին կախ տալով
Մի ցընորական պատուոյ բոժոժներ՝
Սիրել են տալիս մեզ նենգ գգուանքով
Անարգ ըստրուկի թունոտ շղթաներ,—

Հոգիս դառնացած, արցունքն աչերիս,
Ես սլանում եմ մտքով այլ աշխարհ—
Եւ ա՛յլ պատկերներ անա առաջիս,
Ա՛յլ երգի ձայներ անա ինձ համար.
Անա բնութեան կապանք խորտակած՝
Սուրբ ազատութեան մատաղ դիցուհին
Ժպտում է հային մարտից թուլացած,
Ձեռին նոր կեանքի ծաղկող ձիթենին։

Գարնան գալարիքն արեամբ հեղեղած,
Արի կուրծքերից վարդեր են բուսնում.
Փառաւոր մահուան համբոյրն ընդունած
Շրթունքն՝ հայրենի երկիրն են օրհնում։
Դիւցազանց ոգին մոռցուած գամբանից
Յարութիւն առած մեզ շունչ է տուել,
Եւ նոր Աւարայր մեր խորունկ քնից
Զարթած զիմում ենք կռուել ու մեռնել...

Փափկասուն տիկնայք, նազելի կուսան
Շքեղ մազերից վիրակապ հիւսած,
Հեզ ճակատներին վեհ սիրոյ նշան,
Դաշտ են շտապում, պաճուճանք մոռցած.
Եւ մենք մեռնում ենք մեր մահն օրհնելով,
Որ մեծ, սուրբ գործի եղանք նահատակ,
Սուրբ ազատութեան այգը տեսնելով
Եւ անմահութեան անթառամ պսակ։



Եւ անա զեփիւռն անուշ բուրմունքով
Իմ տանջուած հոգուն հրճուանք է բերում,
Անա երկնային քաղցր բերկրանքով
Ես գրախտի արժան նոր երգ եմ լսում...
Բայց աւա՜ղ ցնորքիս. դեռ մօտ չէ գարուն,
Ոչ ժանգն է ջնջուել մեր շղթաներից,
Ոչ մեր կուրծքըն է վարդով զարդարուն,
Ոչ այգն է ջոկուում խաւար գիշերից...



* * *

Երգի՛ր, հոգեակ, երգի՛ր, իմ մանուկ.
Ձայնիկդ անուշ յուզում է հոգիս.
Անցած աւուրց ցընորք վաղանցուկ
Փայլ է տալիս այս մարող կեանքիս։

Գուցէ դու ես, որ կեանք պիտի տաս
Մաշուած սրտիս այս դառն օրերում.
Եւ երանի՜ թէ դու հաւատաս,
Որ քո երգիցն ես նոր եմ ապրում։

Վառ զգացմունքի այն մոռցուած լեզուն
Թոթովում է ահա ականջիս.
Ահա՛ նախկին սէր, խանդ և աւիւն,
Անցած չքնաղ պատկերն առաջիս . . .

Երգի՛ր, հոգեակ. հոգեզմայլ երգով
Տուր մոռացօնք ծերացող սրտիս.
Ո՜հ, թողի՛ր ինձ, և քնքուշ ձեռքով
Տուր քաղցր հանգիստ յոգնած ճակատիս։



## ՆՈՐ ՏԱՐԻ

Ես քնած էի։ Խորին գիշերով
Ահա քաղցր երազ. տեսնում եմ պայծառ
Ծագել է արև ոսկի շողերով,
Էլ չըկայ խեղդող այն մահու խաւար։
Եւ սիրտըս թնդաց. «Ահա՛, ասացի,
Փոթորիկն անցաւ, հասան վառ օրեր.
Բաղդը մեզ բերեց ահա Նոր Տարի—
Նոր այգ փրկութեան, հաշտութիւն և սէր»...

Ցնորքըս անցաւ, երբ ես զարթեցայ.
Տխրագին ամպեր երկինքը պատած՝
Ծանրացան նորից իմ սրտի վերայ,—
Եւ հառաչեցի ես դարձեալ ճնշուած.
«Ո՛վ անբաղդ երկիր, և այս Նոր Տարին
Չըբերեց պայծառ օրուանդ աւետիք.
Կարօտ մնացիր գարնան արևին,
Ծուխի պէս ցնդեց երազըդ գողարիկ»։

## ՊԵՐՃ ՊՌՕՇԵԱՆԻՆ

Հայրենիքիդ ծառ ու ծաղկունք,
Քար ու քարափ, խոր ձորեր,
Անմահական անուշ ակունք,
Արագածի քաղցր հովեր,

Շինականի չարն ու բարին,
Ուրախութիւն, դարդն ու ցաւ—
Թև տուեցին քո հանճարին,
Կարող վրձինդ շարժուեցաւ.

Եւ պատկերներ չքնաղ, սիրուն,
Կենդանացան՝ շունչ առած.
Նոքա միշտ թա՛րմ, ինչպէս գարուն,
Հոտ են բուրում հայրենեաց։





## ԼՈՒՍԱՒՈՐՉԻ ԿԱՆԹԵՂԸ

Անցաւ, եղբա՛յր, մեր պարզամիտ մանկութիւն,
Էլ հրաշքների չենք հաւատում մենք վաղուց.
Եւ մեր աչքում չունին այլ ևս թովչութիւն
Աւանդ հասած առասպելներն հինաւուրց։

Բայց մի զրոյց, որ սրբութեան դրոշմով
Դարէ ի դար հասել է մեզ պապերից
Եւ իբրև գանձ նուիրական խնամով
Պահպանուել է մոռացութեան աւերից,
Միշտ սրբազան ակնածութեան մի զգացում
Եւ վեհ խոհեր յարուցել է իմ հոգում։

Ամէն անգամ երբ վերջալոյս ծիրանի
Հանգչում է մեղմ Արագածի կատարին,
Եւ զերդ մանկան պայծառ աչեր գեղանի
Աստղերն երկնից փայլ են տալիս կամարին,
Նայում եմ ես և ըսպասում, որ վառուի
Մի այլ ճրագ ծերուկ լերան ճակատին։

Ոչ բնութեան սահղծուած է այն հրաշալի
Եւ ոչ կերտուած ճարտարարուեստ մարդկային,
Այլ մի ուրիշ չնաշխարհիկ զօրութեան,
Արարչութեան խորհրդաւոր մի գաղտնիք.
Այն մեր հոգու լուսոյ ջահն է նուիրական,
Ողջոյն ազգի կենդանութեան երաշխիք։

Եւ այդ հրաշն, եղբայր, անշէջ կլինի,
Քանի վառող Աջն է մեզ միշտ հովանի։





* * *

Ալագեազ բարձր սարին
Ձին ա կխտուել կատարին.
Սարի ճամբէք, բաց էլէք,
Էթամ, հասնեմ իմ եարին։

Ա՛խ, իմ ճամբէն քարոտ ա,
Սիրտս էրուած, եարոտ ա.
Ղարըբի օրն ըլնի սև,—
Ազիզ եարի կարօտ ա։

Եարիս տեսայ, լալիս էր,
Լալիս, գլխին տալիս էր.
Ճամբայ տուէք, ա՛յ սարեր,
Ձեռով արի՝ գալիս էր։

Էն ի՞նչ ղուշ ա էն քարին…
Սիրտս կաթում ա արին,
Ա՛յ իմ թաղան, թև տուր ինձ,
Թռնեմ, հասնեմ իմ եարին։



* * *

Ա՛յ վարդ–աղջիկ, մօտ արի,
Քեզ եմ կանչում, մօտ արի,
Նազո՛ւ աղջիկ, չէկ աղջիկ,
Քեզ եմ կանչում, մօտ արի:

Վարդերի հետ խաղում ես,
Երեսխս ծիծաղում ես,
Էրուած սիրտս քաղում ես—
Քեզ եմ կանչում, մօտ արի:

Աչքըդ ծով, ունքըդ կամար,
Աղջի՛, սիրտս ո՛ւր տարար.
Բիւլբիւլ դառայ քեզ համար—
Քեզ եմ կանչում, մօտ արի:





* * *

Հայրենի տան ես ինձ տեսայ—
Վառ գարուն էր խնկաբոյր.
Լողում էին երկնից վերայ
Մանրիկ ամպեր ոսկէթոյր:

Մեղմիկ շնչում էր զով քամին,
Ծառ ու ծաղիկ օրօրում.
Կարկաչահոս վտակներին
Ծիծառն ողջոյն էր բերում . . .

Բայց այդ ուրախ բնութեան տօնին
Մէկը չըկար՝ խնդակցէր.
Մութ էր պատել մեր սրտերին,
Թռչուն էինք բունաւէր:



* * *

Երբ կեանքի ունայն հոգսերից ճնշուած
Ես վհատ հոգով իմ շուրջն եմ նայում,
Տեսնում եմ չնչին կրքերով լցուած
Բոլորիս հոգին՝ ասում եմ տրտում,
Թէ ազնիւ խոհեր, վսեմ ըզգացմունք
Էլ չեն մատչելի մեր քար սրտերին.
Թէ դոքա որպէս մի մի մատաղ տունկ
Խամրեցան, երբ ժանտ փչեց հիւսիսին։

Բայց ահա, մինչ մենք իբրև սգաւոր
Ողբում ենք պայծառ յոյսերի աւեր,
Մինչ դեռ չբացուած խաւարում է օր
Եւ վհատութեան տիրում մեզ գիշեր,—
Լսում եմ մի ձայն, որ ջերմ հաւատով
Գործի է կոչում մեզ լքեալներիս.
Վէրքեր է ողբում նա խոցուած սրտով,
Բայց իւր սէրը մեզ աւանդ է տալիս։



Եւ ասում եմ ես, թէ կ'անցնի խաւար,
Կը վառուի կրկին յուսոյ արշալոյս,
Եւ ցանկալի օր կը գայ մեզ համար,
Կը շողայ բաղդի ժպիտ սիրայոյզ . . .
Եւ նախնեաց ոգին մոռցուած դամբանից
Մեր խեղճ աշխարհում, որպէս մի փիւնիկ,
Կը զարթնի փառքով աւերակներից,
Գարնան պէս մատաղ ու միշտ գեղեցիկ։



## ՏՕՆԱԿԱՆ ԵՐԳԸ

Տաւիղը ձեռին երգիչը մանուկ,
Վարպետի առաջ մտախոհ չոքած,
Անվարժ մատներով լարերին փափուկ
Զարկում էր մերթ մերթ ահով ու յուզուած։

Եւ հնչում էին լարերն ողբաձայն,
Դողդողում էին, օդի մէջ ցնդում,
Ինչպէս հեկեկանք սգաւորի տան
Կամ ձմրան քամին ճիւղապատ դաշտում…

Եւ ժպտաց վարպետն, ասաց դառնութեամբ.
«Երգել ուզեցիր դու տօնի համար . . .
Բայց չէ՞ որ միայն երկնքումն անամպ
Փայլում է արև ջերմագին ու վառ.

«Եւ մի՞թէ ցաւոտ սրտից կը թռչեն
Ցնծութեան և ոչ վշտալից ձայներ.
Ա՜խ, ոսկի լարեր պիտի հառաչեն,
Մինչ աշնան նըման խամրած են սրտեր»…





*
* *

Դարերով լացիր, ո՜վ մայր հայրենիք,
Եւ արիւնահոս վէրքերըդ ցարդ բաց,
Անվերջ տանջանքիդ ահաւոր գաղտնիք
Անարցունք աչքից պահում ես ծածկած…
Մահամերձ հիւանդ՝ անփառք ապրեցար,
Հալուում ես կամաց դու մոմի նման.
Դու կայծեր տուիր, խարոյկ չունեցար,
Գընում ես դէպի անխաչ գերեզման։

Մնացել ես լուռ, ինչպէս սև գիշեր,
Մենաւոր ճամբորդ՝ շուրջըդ պիշ աչքով
Նայում ես—արդեօք չե՞ն ցոլայ աստղեր,
Խաւար անապատն ահեղ կայծակով
Չի՞ լուսաւորուիլ արդեօք առաջիդ,
Չի՞ իջնիլ հրեշտակ քեզ հովանաւոր՝
Երկնագեղ դէմքին հաշտութեան ժպիտ,
Չի՞ վառուիլ արդեօք այգը փառաւոր . . .

Սպասում ես արդեօք, որ նիրհըդ մահուան
Գայ թօթափելու որոտող երկին,
Հովիտ ու ձորերդ արեամբ ծովանան,
Որ վէրքը սրբէն քո մաշուած կուրծքին.
Թէ պիտի մնաս դու յուսահատուած,
Որ օրհասական ժամըդ վերայ գայ,
Ողջակէզ լինիս կենդանի մեռած՝
Բռնութեան զազիր սեղանի վերայ . . .





## ԵՐԳԻՉԸ

(Ռ. Պատկանեանի յիշատակին)

Տաւիղն առաւ ու զարկեց նա ոգեշունչ լարերին,
Եւ թրթռուն նըւագներ բորբոքեցին մեր հոգին.
Գարուն և սէր էր երգում, երկնից կապոյտն ու աստղեր,
Եւ ոսխակի դայլայլիկ, և պուրակի զով ըստուեր։
Նորա մատաղ սրտի մէջ դեռ գարուն էր փթըթած,
Նորա համար քաղցր էին դեռ վայելքները կենաց.
Եւ երազներն էր երգում նա մեր ծաղիկ հասակի,
Եւ օրհնում էր պտուղներն արդար, խաղաղ վաստակի։

Անցան օրեր, և ահա խաւարեցաւ մայիսեան
Գեղաժպիտ առաւօտ. երգչի գլխին կուտուեցան
Մռայլ ամպեր, և հոգին խռովեցաւ թախծալից.
Եւ թօշնեցան անուրջներ, ու հեռացան առաջից
Վառ պատկերներ մանկութեան . . . Եւ լալաձայն հառաչներ

Հասան նորա ականջին. տեսաւ, որ կեանքն էլ այն չէր,
Ինչ կարծել էր երազկոտ, անփորձ, անհոգ օրերին . . .
Եւ վշտաբեկ նա հոգով նոր շունչ տուաւ լարերին։

Եւ բարձրաձայն աղաղակ թնդացրեց մեր աշխարհ,
Կարծես ամպրոպ ճայթեցաւ ու պատռեց սև խաւար.
Մնա՛ք բարով, անուրջներ, կո՛յս աչաղեղ ու գարուն,
Էլ հնչելու չէ տաւիղ՝ գմայլուած անուշ ձեր սիրուն . . .
Եւ նա երգեց մերթ տխուր, ինչպէս մրմունջ սգաւոր,
Մերթ պոռկելով զայրագին չարի դիմակ նենգաւոր.
Մէկ էլ հուժկու հարուածով սաստ թափում էր կըրակ—
Այն անվեհեր մի մարտի զօղանջում էր զոռ կոչնակ։

Եւ սթափուեցանք մենք քնից, ականջ դրինք վրդովուած;
Հզօր ձայներն անծանօթ մենք լսեցինք կախարդուած . . .



Եւ, ինչպէս մութ գիշերով հեռու ճրագ ճամբորդին,
Նա գիւթական զօրութեամբ դէպ ինք քաշեց մեր հոգին։
Իբրև մարտիկ շղթաներ թէ խորտակել չկարաց,
Ազատ կեանքի մարգարէ դարձաւ իւր խեղճ հայրենեաց.
Եւ բռնութեան թշնամի, սուրուկ եղբօրն ախոյեան՝
Ազատ երգով պանծալի փակեց շրթունքն յաւիտեան։



* * *

Մենք միասին գնում էինք ճանապարհ.
Դու վաստակած՝ յանկարծ վհատ կանգ առար
Եւ ասացիր. «Տես երկինքն էլ մթագին
Գոռ փոթորիկ է պատրաստում մեր գլխին»։

Բարդ–բարդ ամպեր թող կուտակուին, թանձրա-
նան,
Ամպրոպ ճայթի, շանթեր փայլին մեր վրան.
Զվհատինք, և միշտ յառաջ անվրդով—
Գիտեմ, ընկեր, տեղ կը հասնենք արևով։

Եւ մենք հասանք, անցանք դժուար ճանապարհ,
Պահ մի կրկին արևն ելաւ ոսկեվառ.
Բայց չխաբուիս դու այս փայլից կարճատև,
Դեռ շատ փորձանք բազդը կ'հանէ մեր առջև։

Կը զայրանայ, կը կատաղի չարութիւն,
Եւ դէմ առ դէմ մենք կը տեսնենք թշնամուն.
Նա սպառազէն և ահարկու, մենք՝ անզօր,
Եւ մեր շարքեր կը նօսրանան օրէցօր։



Եւ կը խլէ նա մեզանից լաւերին,
Եւ կը հասնեն սգոյ օրեր մեզ բաժին.
Կը հալածուինք, կը տառապենք մենք երկար,
Բայց և կ'ապրենք—մեռնելու չէ սերմն արդար...

Բեղմնաւորուած անկածների արիւնով՝
Երկիրն էլի պտուղ կը տայ երկուՆքով.
Ժամը կը գայ, կը դադարի փոթորիկ,
Եւ յաղթութիւն կը վաստակեն մեր որդիք։



*
* *

Զգիտեմ ինչու, երբ մառախլապատ
Կախուած է երկինք, և սրտիս վերան
Վիշտ է ծանրանում, և մինչ յուսահատ
Տեմնում եմ մրրիկ ցրտաշունչ ձմռան,—
Ես երազում եմ մի չքնաղ գարուն,
Ոսկի արևով և ջերմ և պայծառ,
Կանաչ դաշտօրայք, լեռներ զարդարուն,
Վտակն առաջիս վճիտ ու կայտառ։

Զգիտեմ ինչու, երբ տեսնում եմ ես,
Ինչպէս սաստկանում, աճում է չարիք
Եւ անագորոյն դաժան Սֆինքսի պէս
Խլում է մատաղ մեր կեանքի ծաղիկ,—
Ես մտածում եմ, որ այս չարիքն էլ
Պիտի չըմնայ անվերջ, անվախճան.
Թէ չար, թէ բարի, խինդ թէ վիշտ անել՝
Կ՚անցնեն գերդ երազ, ինչպէս ամէն բան...





*
* *

Երբ գարնան առաջին ծիծեռնակի հետ
Նոր կեանքի մի վառ շունչ լցւում է հոգիս,
Երբ պղտոր վտակի ալիքներ վէտ վէտ
Տալիս են մի քաղցրիկ ողջոյն հէք սրտիս,—

Զգում եմ, որ մաշուած ոյժերս են զարթնում,
Զգում եմ, որ դեռ ևս մօտ չէ ծերութիւն.
Նոր երգի դիւթական ձայներ եմ լսում,
Եւ մատաղ հուր-բոցով եռում է արիւն։

Բայց երբ որ գարնան հետ լսում եմ մարդկանց
Խնդագին աւետիք, թէ Քրիստոս յարեաւ,
Ա՜խ, բոլոր հրապոյրներն առում եմ սրտանց
Եւ գարնան բարիքներ մոռանում դիւրաւ։

Զգում եմ ես կեղծիքն այդ ուրախութեան
Եւ տեսնում, որ միայն մի օրուայ համար
Ամէնքս էլ սուրբ անունն առնում ենք բերան
Եւ առանց ըզգացման կրկնում աղայաբար։

Եւ միշտ էլ այդպիսի օրերն աւելի
Մտածել են տալիս, թէ որքան է պակաս
Մեզ հոգու զօրութիւն, թէ ինչպէս երկրի
Ոյժն է մեզ քաշում դէպի վայր հանապազ։





* * *

Դարեր անցուցինք մենք տառապանքով
Եւ համբերութեամբ, հլու մեր բաղդին,
Մենք սպասում էինք յուսով, հաւատքով,
Թէ երբ կը հասնէ վախճան տանջանքին։

Եւ այսօր ահա արեան հեղեղից
Ծառագունեցաւ երկինքը վճիտ.
Անզօր հառաչանք, ճիչեր վշտալից
Մեր երեսներից խլեցին ժպիտ։

Աչք ենք դարձնում ամէնքս ակամայ
Դէպի այն տխուր հովիտն արտասուաց,
Ուր հայ գութանի երգն ամենօրեայ
Դարձել է աւեր ողբացող մի լաց.

Եւ ըսպասում ենք, ըսպասում կրկին,
Որ արեան դաշտում փթըթին վարդեր,
Որ որոտացող թխպամած երկին
Երկրին ուղարկէ անձրև կենսաբեր...



## ԱՐԾԻՒՆ ՈՒ ԱՐՏՈՒՏԸ

Արծիւը կանգնած սև ժայռի գլխին
Հանգիստ ու հպարտ նայում է չորս դին.
Ցածն ամպեր ճերմակ լողում են ձորում,
Վերևում վճիտ եթերն է ծորում։
Եւ ձիւնագագաթ լեռների արքան
Չորս դին է նայում, ասում ինքն իրան.
«Ինձնից բարձր էլ ո՞վ կարող է սլանալ,
Այս վեհ բարձունքին ինձ պէս տէր դառնալ»։

Յանկարծ երկնքի անհուն կապոյտից
Անոյշ ճռուողիւն հնչեց բերկրալից։
Արծիւն ահաւոր նայեց դէպի վեր,
Տեսաւ՝ ոյժը չէ աշխարհին միշտ տէր.
Արտուտը փոքրիկ մինչ երկինք հասած,
Արևի ոսկի փայլովն ողողուած,
Գովքն էր գեղգեղում կենսաբեր գարնան,
Մահամերձ երկրի օրհներգն յարութեան։







...Ասում ես, եղբայր, թէ զուր ենք սպասում,
Թէ խորտակուեցան արդէն մեր յոյսեր,
Վերջին փոթորկի թէ ձայնն ես լսում
Եւ հայրենի տան տեսնում ես աւեր։

—Շէն չէ երևում ինձ էլ նա բնաւ,
Բայց և աւերակ ես չեմ համարում.
Չեմ ասում, թէ մեր վերջին ժամն հասաւ,
Եւ էլ տեղ չունինք մենք այս աշխարհում։

Քանի չէ մարել օջախի կրակ,
Տունն էլ է կանգուն, տան տէրն էլ կենդան.
Էլ չկան բոցեր, բայց պաղ մոխրի տակ
Կայծերը երկար դեռ պիտի մընան։

Կը գայ ժամանակ, սիրով կեանք կը տանք
Ու կը բորբոքենք մենք հուրը թաքուն,
Եւ դու կը տեսնես չքնաղ ապարանք
Այնտեղ, ուր հիմա տեսնում ես աճիւն։



## ՎԱՀԱԳՆԻ ԾՆՈՒՆԴԸ

Երկնեց երկին և երկիր,
Երկնեց և ծով ծիրանի,
Եւ եղէգնիկը կարմիր
Երկնեց ծովում ծիրանի։
Ծուխ է դուրս գալիս եղեգան փողից,
Բոց է դուրս գալիս եղեգան փողից․
Բոցն է պատել կարմիր եղէգնիկ,
Բոց է դարձել և ծով ծիրանի․
Կարմիր բոցիցն ահա մի մանկիկ,
Վահագն ահա՛—մանուկ գեղանի։
Բոց մօրուքով,
Հուր շրթունքով
Հուր հեր գլխին—հրեղէն պսակ,
Եւ աչերն են զոյգ արեգակ։
Ալեծուփ ծովի ծիրանի ալիք,
Գնում են գալիս, ծեծում են ափունք․
Ահեղամռունչ գոռում է մանկիկ,
Սաստում է ալեացն հրավառ շրթունք։
Վահագն ծնաւ, լռեցէք, ալիք․
Դու ծովահալած, դադար ա՛ռ, մրրի՛կ։



Թևերն ոսկէհուռ, հրահեր բաշով
Նժոյգը տակին՝ սլացաւ վերև—
Երեսըդ ծածկի՛ր համեստ շղարշով,
Տե՛ս, ո՛վ է գալիս, և դու, հո՛ւր—արև․
Գլուխդ ալևոր, քաջածի՛ն Մասիս,
Դու էլ խոնարհի՛ր, Վահագն է գալիս։
Երկինք ու երկիր և ծիրանի ծով
Աւետում են քեզ, ցաւերի դու ծով՝
Ցնծա՛, բիւրվիշապ Հայաստան աշխարհ,
Փրկութեան արև Վահագնիդ տեսար։



* * *

Զարթնում է երկիր . . . Անուշ կարկաչով
Վազում են ջրեր, և առաւօտեան
Կենարար հովիկն արդէն ջերմ շնչով
Շոյում է մատաղ կանաչը գարնան։

Ահա և սարեակ․ դալար ոստի վրայ
Կանգնած ճռուողում, սուլում է կայտառ․
Թևեր թափ տալով ողջունում է նա
Վառ արշալուսի ժպիտը պայծառ։

Եւ ձմեռն անցաւ․ բայց դու, իմ ընկեր,
Տրանջում էիր, սրտնեղած, տրտում—
Եւ վաղուց չէր այն—թէ մռայլ օրեր,
Թէ ցուրտն ու խաւար հոգիդ են ճնշում։

Ա՜խ, ոչ բընութեան, այլ կեանքի ցրտից
Վախեցիր, եղբայր․ ձմեռ էր երեկ,
Իսկ այսօր գարուն, գունդ, ծաղկալից . . .
Իսկ մե՞նք, մենք արդեօք կը ծաղկե՞նք երբեք։





* * *

Լուռ կա՜ց, սի՛րտ իմ․ այս աշխարհում
Դարդ իմացող չես գտնի․
Մեզ պէտներին ջուրն է բերում,
Ջուրն էլ մի օր կը տանի։

Գետի երեսն ընկած տաշեղ՝
Մենք գնում ենք հա առաջ․
Հանգիստ չունինք և ոչ մի տեղ,
Լսող չկայ մեր հառաչ։

Լուռ կա՜ց, սի՛րտ իմ․ ուրիշներին
Ափսոս է մեր ցաւն յայտնենք․
Դարդն ընկեր է մեզ անմեկին,
Մինչ գերեզման կը տանենք։



## Ս. ՆԱԴՍՈՆԻՑ

1.

### ՊՈՅԵՏ

Թող քո երգում եռայ հուրը բարկութեան,
Թող երգդ այրէ հոգի անկեղծ արցունքով,
Թող արձագանգ լինի ազնիւ ցանկութեան,
Ոգևորէ հայրենիքի սուրբ սիրով։
Նորա ամէն թող ձայնն առաջ մեզ կոչէ,
Յոյս ներշնչէ ահեղ մարտից ընկճուածին,
Անմահութեամբ թող անկածին պսակէ,
Նշաւակէ երկչոտութեամբ փախչողին։
Ստութեան հետ և խաւարի կռիւ մտած՝
Ճշմարտութեան, լուսոյ համար մարտնչենք,—
Այն ժամանակ քո առաջին խոնարհած՝
«Դու պոյետ ես», քեզ հրճուանքով մենք կ՚ասենք։

Թող երգդ հնչէ, որպէս վտակ կարկաչուն,
Որ սահում է մեղմ յորձանքով արծաթի,
Որպէս աղբիւր եռան յոյսեր, ցանկութիւն,
Եւ ույժ լոյսի և մի ծիծաղ կենդանի։
Թող մոռացուինք մատաղ ձայներ լսելով,
Թռչենք քեզ հետ երազների այն աշխարհ,
Ուր չեն թափւում դառն արտասուք տանջանքով,
Ուր կայ հանգիստ, գեղեցկութիւն սիրավառ.
Զուարճանանք՝ թողած ամէն վիշտ, հոգսեր,
Եւ մանկութեան անուրջներով մենք ապրենք,—
Եւ մենք կ՚օրհնենք այն ժամանակ քո գործեր,
«Դու պոյետ ես», քեզ հրճուանքով մենք կ՚ասենք։





2.

* * *

Ընկե՛ր իմ, եղբա՛յր, դու վաստակաբեկ եղբայր իմ տանջուած,
Ով որ էլ լինիս դու, մի՛ վհատիր.
Թող հեծէ թշուառ, անարդարութեամբ, չարիքով լցուած,
Դառն արտասուքով ողողուած երկիր,
Թող որ խորտակուած ոտնակոխ լինի քո սուրբ իդէալ,
Թող անմեղների արիւնն յորդանայ,—
Հաւատա՛, եղբա՛յր, կըգայ ժամանակ—կըկորչի Բաալ,
Եւ նորից երկրին սէր կըտիրանայ։

Ո՛չ շղթաների դաժան բեռի տակ, ո՛չ փուշ պսակով
Եւ ո՛չ ծանր խաչ կորացած ուսին,—
Նա աշխարհ կըգայ մի նոր զօրութեամբ և մի նոր փառքով,
Բաղդի պայծառ ջահն անյողդողդ ձեռին։

Եւ էլ չի լինի աշխարհում արցունք, ոչ թշնա-
մութիւն,
Ոչ մոռացուած շիրիմ և ոչ ըստրուկներ,
Ոչ կարօտութիւն, անլոյս, մահաբեր սև կարօ-
տութիւն,
Ոչ սուր, ոչ մահու խայտառակ սիւներ։

Գիտեմ, իմ ընկեր, չէ մի պատիր յոյս, ոչ ցնորք
վաղանցիկ
Սիրոյ անձկալի գալուստը պայծառ.
Զորս կողմըդ նայիր—չափազանց արդէն ճնշում
է չարիք,
Եւ խիստ է արդէն գիշերը խաւար։
Տառապանքներից աշխարհը կ'ընկճուի, և կըթու-
լանայ
Նա անմիտ կռուից, արեան մէջ խեղդուած,—
Եւ դէպի սէրը, մեծ սէրն անձնազոհ, աչքը
կ'ամբառնայ,
Աչքը՝ վշտալի աղերսով լցուած . . .





ՊՈՒՇԿԻՆԻՑ

1.

ԱՆԱՒԱՐՏ ՊԱՏԿԵՐ

Այս ո՞ւմ խանդավառ միտքն է գուշակել,
Ըմբռնել գաղտնիքը գեղեցկութեան,
Ո՞ւմ արդեօք, երկի՛նք, վրձինն է դրոշմել
Այս ըսքանչելի գծեր երկնարժան։

Այդ դու ես, հանճա՛ր . . . Բայց խորտակեցին
Սիրոյ տառապանք նորան. և անձայն
Աչքերը յառած իւր գործի վըրան՝
Հանգչում է արդէն բոցավառ հոգին . . .



## 2.

* * *

Ձեզ չեմ ափսոսում, իմ գարնան տարիք,
Որ անցաք ունայն սիրոյ ցնորքով.
Ոչ ձեզ, գիշերուան վայելքներ գաղտնի,
Որ երգել եմ ես հեշտաձայն սրնգով.

Ձեզ չեմ ափսոսում, նենգոտ ընկերներ,
Պըսակ ու թասեր անհոգ խրախճանի,
Եւ ոչ ձեզ, մատաղ կոյսեր գեղանի.—
Մտքիս հետ ընկած՝ չունիմ զբօսանքներ։

Բայց ո՞ւր դուք արդեօք, հոգեզմայլութեան,
Մատաղ յոյսերի խաղաղ րոպէներ.
Ո՞ւր է հուրն ու խանդ ոգևորութեան . . .
Ա՜խ, եկէք կրկին, իմ գարնան օրեր։





## 3.

## ՊՈՅԵՏԻՆ

Պոյե՛տ, սիրոյն դու ամբոխի մի՛ տար գին—
Շո՛ւտ կըլռեն աղմկալից դըրուատներ.
Ծաղր ու լուտանք թող որ թափեն քո գլխին,
Այլ դու մընա՛ միշտ անխռով, աներեր։

Արքայ ես դու. ապրի՛ր մենակ։ Քո ուղին
Գընա՛ վստահ, ուր որ տանէ միտքդ ազատ.
Հասունացրո՛ւ դու պտուղներն հարազատ
Վեհ խոհերիդ, վարձ մի՛ ուզիր քո գործին։

Վարձահատոյց և դատաւոր դու ինքդ ես.
Քո գործը դո՛ւ ամէնից խիստ կը դատես։
Ինքդ գո՞հ ես, արուեստաւո՛ր անաչառ։
Գո՞հ ես. խուժանն հայհոյէ՜ թող քո վաստակ,
Ծաղրէ բագինդ, ուր վառւում է քո կըրակ,
Եռոտանիդ դըղուեցընէ տղայաբար։



4.

* * *

Ո՛վ վարդ աղջիկ, գերի եմ ես,
Բայց կապանքից չեմ ամաչում.
Արքայ-երգիչ սոխակն այսպէս
Անցնում է կեանք դափնիներում
Հպարտ, չքնաղ վարդի մօտին
Գերութեան մէջ, սակայն անուշ,
Եւ իւր տաղերն երգում քնքուշ
Մութ, հեշտալի գիշերներին։





5.

* * *

Աղմկալից փողոցում
Թէ տաճարումն ես լինիմ
Կամ խնջոյքի ժողովում,—
Իմ մտորմունքն ես ունիմ։

Ասում եմ ես. տարիներ
Կ՚անցնեն, ու մեզ յաւիտեան
Պիտի գրկէ սև գիշեր—
Մէկինս էլ արդ մօտ է ժամ։

Կաղնի տեսնեմ մենաւոր՝
Խորհում եմ ես, թէ ինձ էլ
Կը թաղէ այս ալևոր,
Ինչպէս նախնեացս է թաղել։

Քնքուշ մանուկ գգուելիս՝
Ասում եմ. կա՛ց դու բարով.
Տեղըս ես քեզ եմ տալիս,
Ծլիր, ծաղկիր քաղցր օրով։

Եւ ամէն օր, ամէն ժամ
Մտածմունքս է անպակաս,
Աշխատում եմ իմանամ
Մահուս տարին վերահաս։

Եւ ո՞ւր բաղդն ինձ կը տայ մահ—
Ճանապարհի՞ն թէ կռւում.
Թէ՞ հովիտն է մերձակայ
Իմ պաղ մարմինն ընդունում։

Եւ անզգայ թէպէտ դիս
Մէկ է ուր էլ որ փտի,
Բայց հայրենի իմ հողիս
Կ'ուզէի մօտ նա հանգչի։

Եւ դրան մօտ իմ շիրմի
Կեանքը մատաղ թող խաղայ,
Եւ բնութիւնն անհոգի
Միշտ էլ չքնաղ շողշողայ։





## ՆՈՐ ՏԱՐԻ

(Նեկրասովից)

Մաշւում է իմ կեանք, հալւում ամէ ցամ.
Տրկար է միտքըս, սառչում է արիւն . . .
Ես, մայր—հայրենիք, կ'իջնեմ գերեզման՝
Զրտեսած քաղցր քո ազատութիւն։

Բայց ես կ'ուզէի—գէթ իմ օրհասին
Դու ոտ կոխէիր հաստատ ճանապարհ,
Տանջանքից յետոյ դու քո առաջին
Տեսնէիր բացուած քո օրը պայծառ։

Կ'ուզէի—գէթ այժմ հասցնէր քամին
Հայրենի գիւղից մի ձայնիկ միայն,
Որ ինձ չըբերէր նոր բօթ ցաւագին
Դառն արտասուքի, ծովացած արեան . . .



## ՅԱՌԱ՛Ջ

(Ա. Պլեշչեևից)

Յառա՛ջ աներկիւղ, առանց վարանման,
Եղբա՛րք, դէպի գործ դիմենք սխրալի.
Երկնքումն արդէն մեր սուրբ փրկութեան
Ես այգը տեսայ վառուած լուսալի:

Ձեռք ձեռքի տուած յառա՛ջ միասին
Ընթանանք, եղբա՛րք, փառահ ու անահ.
Եւ ապաւինած գիտութեան դրօշին
Թող մեր միութիւնն աճի, ամրանայ:

Մենք ճշմարտութեան ազատ բարբառով
Մեղք ու սուտթիւն կը պատուհասենք,
Եւ քնէածներին զարթեցընելով
Դէպ ճակատամարտ յառաջ կը տանենք:

Եւ չենք բաեղծիլ կուռքեր մեզ համար
Մենք ոչ երկնքում, ոչ երկրիս վերայ.
Ամենայն բարիք թող տայ մեզ աշխարհ—
Երկրպագութիւն չե՛նք անիլ նոցա:



Մենք մաքուր սիրոյ վարդապետ կ՚լինինք
Տնանկ աղքատին, մեծատուններին,
Եւ դորա համար թող որ հալածուինք—
Կը ներե՛նք մենք մեր թշնամիներին:

Երանի՛ նորան, որ դու մաքառման
Եւ հոգսերի մէջ իւր կեանքն է մաշել,
Պրղերգ ու խարդախ ծառայի նըման
Իւր քանքարն հողում անշահ չէ թաղել:

Սուրբ ճշմարտութիւն վառուած ըրպէս ջահ,
Թող մեր ուղեցոյց առաջնորդը լինի.
Եւ հաւատացէք, աշխարհիս վերայ
Ազնիւ ձայնն ի զուր չպիտի անցնի:

Լսեցէք, եղբա՛րք, ձեր եղբօր խօսքին.
Քանի մեր մատաղ եռում են ոյժեր՝
Յառա՛ջ ու յառա՛ջ դիմենք միասին—
Ինչ էլ բաղդը մեզ վիճակած լինէր:



## ԳՐԵՐԱԴՈՎԻՉԻՑ

Ցոլուն աստղերը կապոյտ երկնքում
Երգում են անուշ միասին խմբուած,—
Եւ զգուշութեամբ կամաց են երգում,
Որ չզարթեցնեն երկիրը նիրհած։
Ա՜խ, ամբողջ օրը շրջող ոտներից,
Անվերջ աշխատող կուռ բազուկներից,
Ամուր բաբախող մարդկանց սրտերից
Խեղճ մայր—երկիրը սաստիկ է յոգնած...





## ԱՆԳՐԱԳԷՏ

(Սիրոկոմլեայից)

Երբէք մէկին չեմ նախանձում ես աշխարհի
երեսին,
Միայն, գրագէտ դուք պարոններ, նախանձում եմ
ձեր բաղդին։
Ա՛խ, գթացէք գեղջուկ որբիս, մի լաւութիւն
միայն արէք—
Տուէք մի թերթ ինձ ճերմակ թուղթ, մի փե-
տուրէ գրիչ տուէք,
Եւ ինձ գրել սովորցրէ՛ք, սովորցրէք լա՛ւ,
շուտո՛վ,
Որ գրիչս կայծակից էլ արագ թռչէ գրելով.
Որ պատմելով թղթի վերայ ես ձեզ ցոյց տամ
ամէն բան—
Մեր աշխատանք, մեր չարչարանքն ու մեր խաչը
վկայութեան . . .
Կը յայտնէի, ի՛նչ ցնորքներ, ի՛նչ մտքեր կան իմ
գլխում,

Մի ողջ աշխարհ ցոյց կը տայի ես աննման պատկերում . . .
Բայց այժմ անհետ չքանում են բոլոր իմ քաղցր երազներ.
Ես անգրագէտ, ես անուս եմ . . . Սովորցրէք, պարոններ։

Կը գրէի ես առաջուց, ինչ եմ տեսնում երազում . . .
Այս երազներն այնպէս շքեղ, հրաշալի՜ են . . . Եւ դաշտում
Ահա գեղջուկ մատաղ աղջիկն հունձ է անում եռանդով,
Նորան հրեշտակն երկնքից ժպտում է վառ աչերով . . .
Երևի թէ կարեկցում է նա հնձուորին . . . Եւ Նորա՜ն
Արտուտիկը կամի սփոփել իւր երգովը քաղցրաձայն . . .
Կըգրէի, ինչպէս ամառն արշալոյսն է փայլփայլում.
Եւ քարերին զարնըւելով կայտառ ջուրն է խոխոջում.
Ի՛նչպէս արտում ցորենի հետ զրոյց է անում մեղմ քամին,
Եւ ազօթքի հրաւիրում է փոքրիկ զանգը մեր ժամին.



Ես աղօթել կամենում եմ, բայց չգիտեմ աղօթքներ—
Ես անգրագէտ, ես անուս եմ . . . Սովորցրէք, պարոններ։

Ազնիւ գործ է՝ թէ մարդ գրել իւր խօսքերը կարենայ,
Բոլորն, ինչ որ մտածում է, բոլորն, ինչ որ գլուխը գայ,
Գրչով պատմէ այն ամէնը, ինչ զգացել էր իւր սրտում,
Ճշմարտութիւն միշտ քարոզէ, բարի գործի մեծութիւն.
Լաւ է նոյնպէս, թէ կարող է, գրչով կծու խօսքերին
Պատասխանէ—սուսերի պէս կը հարուածէ չարերին։
Ես շատ անգամ ծաղր եմ լսում, բայց իմ ուսեալ թշնամուն՝
Սիրտս այրւում է, պատասխանի չունիմ բնազորութիւն.
Եւ զուր տեղը ես տանջւում եմ, և յուզւում եմ, և դողում,
Եւ միմիայն թղթի վերայ անմիտ կերպով խազխըզում.
Ինձ ծաղրում են, և ամօթու կարմրում են իմ այտեր . . .

Ես անգրագէտ, ես անուս եմ . . . Սովորցրէք,
պարոններ։

Շատ լաւ բան է գիր իմանալ։ Գրագէտ է վաշ-
խառուն,
Գրագէտ են դատարանի ծառայողներն անկշտում.
Եռանդով էլ նոքա գրում են, նոցանն է դրախտն
աշխարհի,
Իսկ այդ գրելն ի՞նչ փոյթ որ խեղճ մարդու հո-
գին պիտ հանի . . .
Շուտո՜վ, շուտո՜վ գրիչ տուէք, սովորցրէք գործ
ածել,
Կամիմ գրել ազգիս համար, նորա համար աշխատել.
Եւ ես նորան կը պաշտպանեմ չարագործից, յի-
մարից,
Կ'արտագրեմ Աւետարանն ես բոլորը սկզբից . . .
Ա՛յ դու, սագ իմ ճերմակթեւիկ, քեզ տուել եմ
կերակուր,
Քեզ սիրել եմ—փոխարէնը թեւիցդ ինձ մի գրիչ
տո՛ւր.
Սիրո՛ւն դու սագ, տո՛ւր, խնդրում եմ, ինձ
թռչելու զոյգ թեւեր,
Ուր ամէնքը գրագէտ են . . . Սովորցրէք,
պարոններ։

---



## Հ Ե Ռ Վ Է Գ Ի Ց

Կ'ուզէի անհետ հեռանալ, կորչել,
Որպէս ոսկեվառ շողն արշալուսի,
Որպէս մի աստղիկ կ'ուզէի հանգչել
Բարձր կամարում կապոյտ երկնքի։

Որպէս քաղցր երազ կ'ուզէի անցնել,
Խանգարուած տգեղ հոգսերիցն օրուան,
Կամ գիշերային ձայնի պէս մեռնել,
Տեղ տալով խորին մի խաղաղութեան։

Եւ որպէս ցօղը ես շոգիանալ
Կ'ուզէի հզօր արեւի տապից,
Կ'ուզէի դէպի երկինք բարձրանալ,
Որպէս սրբազան կնդրուկ բուրվառից։

Եւ կը ցանկայի ինչպէս ծուխ ցրուիլ,
Ինչպէս օդումը բոյր ծաղիկների.
Ողջ իմ էութեամբ բնաւին ջնջուիլ
Կ'ուզէի յանկարծ, առանց ցաւերի։

Եւ կը ցանկայի . . . բայց ինչո՞ւ ցանկամ.
Դիւրաւ չէ գալիս մահը վերահաս.
Մինչ նորա գալը բաժին է մարդկան
Սրտամաշ ցաւով տանջուիլ հանապազ։

Եւ ահա յետոյ համնում է միայն
Բոլոր վշտերի տխուր փրկութիւն,
Եւ քեզ համար է լոկ անվրէպ վախճան
Քեզ համար, դու՝ մեծ, անսիրտ բնութիւն։





## ԳԵՕԹԷԻՑ

### 1.

### ԴԱՇՏԻ ՎԱՐԴԸ

Փոքրիկ տղան մի վարդ տեսաւ,
Սիրուն վարդը դաշտի միջին.
Ուրախ ուրախ շուտ մօտեցաւ,
Որ լաւ նայէ սիրուն վարդին։
　　Ա՜յ իմ վարդին, կարմիր վարդին,
　　Կարմիր վարդը դաշտի միջին։

Մանուկն ասաց. Քեզ կը քաղեմ,
Ա՜յ իմ վարդիկ դաշտի միջին։
Վարդիկն ասաց. Փշեր ունեմ,
Դու ձեռ մի՛ տալ կարմիր վարդին։
　　Ա՜յ իմ վարդին, կարմիր վարդին,
　　Կարմիր վարդը դաշտի միջին։

Չար երեխան վարդը քաղեց,
Սիրուն վարդը դաշտի միջին.
Վարդը նորան խիստ ծակծկեց,
Բայց և գերի մնաց ձեռին։
Ա՜յ իմ վարդին, կարմիր վարդին,
Կարմիր վարդը դաշտի միջին։





2.

## ՁԿՆՈՐՍ

Ջուրը վշվշում, ջուրն էր դիզանում.
Ձկնորսը նորա նստած էր ափին,
Անխռով, հանդարտ կարթին էր նայում,
Սառը քնի մէջ ընկղմած հոգին։
Եւ մինչդեռ կարթին նայում է նստած,
Ահա պատառւում, բացւում են ալիք,
Եւ դուրս է գալիս ջրիցը յուզւած
Նորա առաջև մի կոյս գեղեցիկ։

Եւ անուշ երգում, ասում է նորան.
«Ինչո՞ւ ես որսում իմ հպատակներին.
Խորամանկ խելքով մահ ես դարան,
Մատնում ես նոցա մահացու տօթին։
Բայց ինչ երջանիկ, եթէ իմանաս,
Ջրի խորքերումն ապրում են ձկներ,
Դու էլ ցած կ՚իջնես, հենց ինչպէս որ կաս,
Եւ սիրով, քաղցրիկ կ՚անցնես քո օրեր։

Մի՞թէ ոսկեշող արևն ու լուսին
Ծովի ցուրտ գրկումը չեն զովանում,
Եւ դէմքը նոցա ջրի երեսին
Աւելի չքնաղ չէ՞ պատկերանում։
Եւ պայծառ երկինք գրաւում չէ քեզ,
Երբ վճիտ ջրումն է նա նկարուած.
Եւ քո իսկ պատկերն, երբ այնտեղ նայես,
Քեզ չէ՞ հրապուրում դէպի ծոցն ալեաց»։

Ջուրը վշվշում, ջուրն էր դիզանում,
Ոտները թրջում բոբիկ ձկնորսին.
Անուշ ցանկութեամբ հոգին էր լցւում,
Ասես այն սիրոյ յոյզն էր առաջին։
Եւ կոյսը նորան երգում էր, թովում,
Եւ ձկնորսը խեղճ իրանից գնաց.
Եւ կոյսն էր քաշում, ինքն էլ հետևում,
Ահա և անհետ ջրի տակ մնաց։





## ԵՐԳՉԻ ԱՆԷԾՔԸ

(Ուլանդից)

Դարեր առաջ կար բարձրաբերձ պարիսպներով
մի դղեակ—
Հոյակապ էր, փառքն հասել էր մինչ ովկիան
կապուտակ.
Շուրջը փռուած ծաղկապսակ անուշաբոյր պար-
տէզներ,
Թարմ, զովաշունչ շատրուաններ ցայտում էին
վառ շիթեր։

Եւ բազմայաղթ այնտեղ նստող գոռոզ արքան
հողաշատ
Բազմած էր իւր գահի վերայ մռայլ դէմքով ու
գունատ.
Ամէն խորհուրդն արհաւիրք էր, կատաղութիւն
աչքերում,
Նորա ամէն խօսքը—կորուստ, արիւն էր նա
միշտ գրում։

Այս ամրոցը երկու ազնիւ երգիչ գնացին մի անգամ.
Մէկն ալեզարդ, միւն պատանի ոսկեզանգուր ու փարթամ.
Տաւիղն ուսին, մի գեղեցիկ նժոյգ հեծած ծերունին,
Նորա կողքին գնում էր առոյգ ծաղկահասակ պատանին։

Ծերունին ասաց իւր ընկերին. «Պատրաստ եղիր իմ որդեակ,
Մեր սրտառուչ տաղերն յիշիր, երգիր ազատ, համարձակ.
Երգիր և վիշտ, և խնդութիւն մատաղ ձայնով դու հզօր,
Գոռ արքայի քարէ սիրտը պիտի շարժենք մենք այսօր»։

Արքէն շքեղ և սիւնազարդ նորա սրահումն են կանգնած.
Գահի վերայ թագաւորը և թագուհին են բազմած.
Նա սիգապանծ, ինչպէս փայլը արիւնավառ հիւսիսի,
Իսկ թագուհին քնքուշ՝ նման արուսեակին լուսալի։



Զարկեց ծերունին ոգևորուած նուրբ լարերին մատներով,
Ճոխ արձագանգ տուին նոքա լիահնչիւն ձայներով.
Եւ գեղգեղեց տաղ երկնարժան չքնաղատես պատանին,
Ինչպէս համերգ ոգիների և խլաձայն ծերունին։

Նոցա երգն է գարուն և սէր, երանաւէտ ոսկէդար,
Ազատութիւն, խօսք ճշմարիտ, արիութեան գործ արդար,
Եւ հեշտութեան ամէն վայելք, որ յուզում է սիրտ մարդկան,
Եւ այն ամէնն, որ կարող է մարդուն տալ տիպ վեհութեան։

Պալատական ասպետները ծաղու խօսքեր մոռացան,
Եւ անվեհեր զինուորները հզօր երգիցն յաղթուեցան.
Իսկ թագուհին՝ սիրտը շարժուած, աչքին արցունք բերկրալից,
Ահա հանեց ձգեց երգչին չքնաղ մի վարդ իւր կուրծքից։

«Գայթակղեցիք դուք իմ ազգը, կամիք խլել և իմ կի՛ն»,—
Անեղ գոչեց, դողաց մարմնով Թագաւորը մոլեգին.
Զգեց սուսերն, օդում ցոլաց, մատաղ կուրծքը պատառեց,
Ոսկէհնչիւն երգերի տեղ կուրծքիցն արիւն դուրս ցայտեց։

Ասես մրրիկ իսկոյն ցրուեց այն ունկնդիր ամբոխին.
Իւր վարպետի գրկումն հոգին փչեց դժբաղդ պատանին.
Ծածկեց մարմինն նա թիկնոցով, նստացրեց երիվար,
Ամուր-կապեց և ամրոցից նա հեռացաւ վշտահար։

Ու դուրս եկաւ, կանգնեց բարձր դարպասի դէմ ծերունին
Ու ձեռքն առաւ տաւիղն, ամէն տաւիղներից մեծագին.
Զարկեց նորան կճեայ սեանը, փշուր փշուր խորտակեց,
Դէպի ամրոցն ու պարտէզներ սոսկալի ձայն արձակեց.



«Վա՜յ քեզ, խրոխտ դու ապարանք. թող ոչ մի ձայն քաղցրութեան,
Լարի հնչիւն, երգ չլսուի քո յարկի տակ յաւիտեան,
Այլ ստրուկների երկչոտ քայլեր և հառաչանք, հեծութիւն,
Մինչ չար ոգին վրէժխնդրութեան քեզ դարձրնէ սև աճիւն։

«Վա՜յ ձեզ, և դուք անուշաբոյր, գարնանագեղ պարտէզներ.
Տեսէք ահա մանուկ երգչի դէմքին սառած տանջանքներ.
Թող սորա տեղ դուք թառամիք, աղբիւրներըդ ցամաքեն,
Գալ օրերին թող քար կտրած և ամայի ձեզ տեսնեն։

«Վա՜յ քեզ, նզո՛վքդ երգիչների, վա՜յ քեզ, անա՛րգ մարդասպան.
Արիւնպսակ փառքի համար մարտըդ լինի թող ունայն.
Թող մոռացուի քո անունը մշտագիշեր խաւարում,
Ինչպէս մահուան վերջին հառաչք, սին ձայն, ցնդի թող օդում»։

Ծերուկն ասաց, և երկինքը լսեց նորա պաղա-
տանք·
Պարիսպները փոշի դարձած, կործանուած է
ապարանք·
Բարձր մի սիւն դեռ վկայ է անցեալ աւուրց
փառաւոր·
Այն էլ շուտով պիտի լինի մի փլատակ սգաւոր։

Չըկայ բուրմունքն այգիների, շուրջը միայն
անապատ,
Չըկայ վըտակ, սաղարթախիտ չը կայ մի ծառ
ստուերաշատ,
Եւ չէ յիշում մի տարեգիր կամ երգ անունն
արքայի։—
Այսպէս ահա կատարուեցաւ անէծքն ահեղ ծեր
երգչի։





## ՇԻԼԼԵՐԻՑ

### 1.

### ԵՐԱՇԽԻՔ

(Դամոն եւ Ֆինտիաս)

Դիոնիսիոս բռնաւորի մօտ գընաց
Դամոնն՝ առած հանդերձի տակ մի դաշոյն.
Նրան կապեցին թիկնապահներըն իսկոյն։
«Ասա՛, վերադ ինչո՞ւ էիր սուր պահած»։—
Եւ նա մռայլ պատասխանեց կատաղած.
—Ուզում էի քեզնից քաղաքն ազատել։
«Խաչի վերա՛յ կարող ես լոկ այդ քաւել»։

Դամոնն ասաց. «Պատրաստ եմ ես մեռնելու.
Կեանքիս խնայել ես չեմ խնդրում քեզանից.
Սակայն թէ շնորհ պիտի անես երբէք ինձ,
Գէթ երեք օր ժամանակ եմ հայցելու,
Գընամ քըրոջս իւր փեսային յանձնելու։
Բարեկամիս թողնում եմ քեզ գրաւական,—
Թէ չը դառնամ՝ իմ տեղ սպանիր դու նորան»։

Եւ դու արքան մի նենգ ժպիտ երեսին
Փոքր ինչ խորհեց, ապա դարձաւ ու ասաց.
«Ես քեզ կը տամ երեք օրն այդ քո խնդրած.
Բայց պայմանի եթէ օրերն անցնին,
Եւ յետ եկած դեռ չըլինիս դու կրկին,
Նա, իմացի՛ր, քո փոխարէն կը մեռնի,
Իսկ քո պատիժն՝ այնուհետեւ կը ներուի»։

Եւ նա եկաւ իւր մտերմին. «Ինձ արքան
Հրամայեց, որ իմ մահուամբ խաչի վրայ
Քաւեմ յանդուգն այն խորհուրդն որ յղացայ.
Բայց շընորհեց երեք աւուր ինձ պայման,
Որ կատարեմ քրոջս հանդէսն հարսանեկան։
Արդ դու մընա որպէս պատանդ արքային,
Մինչեւ ես գամ եւ վերջ տամ քո կապանքին»։

Հաւատարիմ ընկերն նորան լուռ գրկեց
Եւ գնաց, յանձնեց բռնակալին նա իրան.
Միւսն այնտեղից իսկոյն բռնեց իւր ճանբան։
Եւ հենց երրորդ արշալոյսը կարմրբեց,
Շտապով քըրոջն իւր փեսային հասցըրեց
Ու շուտ ընկաւ, տագնապ սրտում, նա ուղի,
Որ պայմանով որոշուած ժամը չանցնի։

Տեղատարափ անա անձրեւ երկնքից,
Եւ թափւում են սարից ջրեր յորդառատ,
Մրռնչում են վտակներ ու հեղեղատ։
Նա ցուպ ձեռին հասաւ գետը փրփրալից,—



Յորձանքն անեղ պոկեց կամուրջն ափերից,
Եւ ալիքներն որոտընդոստ փշրեցին
Մեծ ճայթիւնով կամարները կամրջին։

Եւ յուսահատ կանգնած է նա գետափին.
Հեռու, հեռու աչք է ձըգում անձկալից,
Եւ օգնութեան ճիչեր թռչում են կուրծքից։
Բայց նաւակներն անշարժ անքոյթ եզերքին,
Եւ նայում է նա ցանկալի ցամաքին.
Նաւավարներն անցնելու միրտ չեն անում—
Ալիքները կատաղում են, ծովանում։

Գետեզերքին կանգնած կոծում է մենակ,
Աղաչում է Զեւսին ձեռները մեկնած.
«Ո՜հ, սանձի՛ր դու ալիքները մոլեգնած.
Ժամերն անցնում, ճաշին մօտ է արեգակ—
Եւ եթէ նա մտնի, ու ես դեռ քաղաք
Չըժամանեմ՝ տըւած խոստմանս համաձայն,
Բարեկամիս էլ յոյս չըկայ փրկութեան»։

Սակայն հեղեղն յորդանում է աւելի,
Կոհակն անեղ գալարւում է կոհակին,
Ժամերն անցնում, յաջորդում են մէկ միւսին։
Երկիւղից նա սիրտ է առնում ու հոգի,
Եւ փրփրադէզ հոսանքի մէջ գետակի
Նետւում, պատռում է յորձանքն այն մոլեգին.
Աստուածներից մէկը գըթաց խեղճուկին։

Հասաւ միւս ափն, յառաջ գընաց այնտեղից,
Շընորհակալ իրեն փրկող Աստուծուն.
Բայց ահա տես, նորա հանդէպն են ելնում
Աւազակներ խիտ անտառի մութ խորքից
Եւ կտրում են նորա ճամբան. աչքներից
Մահ է թափում, և սպառնալից լախտերով
Ուղևորի զսպում են գնացքն հապճեպով։

«Ի՞նչ էք ուզում», սարսափահար գոչեց նա.
«Ա՜հ, ես չունիմ ոչինչ բացի իմ կեանքից,
Այն էլ արքան պիտի առնէ ինձանից»։
Եւ խլում է մէկի ձեռից լախտն ահա.
«Ի սէր մտերմիս, ո՛հ, գըթացէք ինձ վերայ»,
Եւ երեքին գըլորում է նա գետին
Հըզօր բազկով և փախցընում միւսներին։

Կիզիչ—արևն արդէն խանձում է երկիր,—
Եւ ուժասպառ, ճանապարհից ջարդըւած,
Կանգ է առնում ու կանչում է նա Աստուած.
«Ո՛հ, դո՛ւ, որ ինձ չար ձեռներից փրկեցիր
Եւ կատաղի այն հեղեղիցն հանեցիր,
Ո՛հ, դու և այժմ ինձ մի մատնիլ կորստեան.
Բարեկամիս պատճառ չլինիմ թող մահուան»։

Բայց ականջ դի՛ր. ահա բղխում է վըտակ
Այնտեղ մօտիկ, մեղմ կարկաչով արծաթի,
Եւ նա կանգնում, լսում է ձայնն անձկալի.
Եւ տես, ժայռից խոխոջելով ու արագ



Թափւում է ջինջ մի կենսատու աղբերակ.
Եւ նա ուրախ խոնարհում է դէպի ցած,
Զովացընում իւր մարմինը թալկացած։

Արեգակը սաղարթների յետևից
Խիտ ծառերի հսկայ ստուերներն է սփռում
Մարգերի վրայ կանաչափայլ, վառվռուն։
Երկու ճամբորդ գնում են նորա առաջից.
Եւ ըշտապով կամի անցնել նոցանից
Ու լըսում է, որ խօսում են իւր առաջ.
«Այժըմ արդէն նորան պիտի հանեն խաչ»։

Եւ երկիւղից արագ փոխում է քայլեր
Եւ անհանգիստ յառաջում է տագնապով.
Լուսաւորուած վերջալոյսի շողերով
Սիրակուսան ցուցնում է իւր կատարներ.
Ցիլոստրատոս, որ Դամոնի տընպահն էր
Հաւատարիմ, ահա ելաւ նըրա դիմաց
Եւ իւր տիրոջը ճանաչեց սարսափած։

«Դարձի՛ր դու յետ. չես ազատիլ ընկերիդ,
Հոգ տա՛ր ուրեմն դու քո անձի փրկութեան.
Նա հիմա իսկ զոհ կըլինի չար մահուան։
Ամէն մի ժամ նա սպասում էր քո դարձիդ,
Եւ հաւատով վստահ էր միշտ խոստմունքիդ.
Եւ անընկուն նորա այն սերտ հաւատքին
Բռնակալի ծաղրը չյաղթեց դառնագին։

«Եթէ արդէն ուշ է, և էլ չեմ հասնի,
Որ ես նորան իբր ազատիչ մօտենամ,
Կ'երթամ, որ գէթ մահով նորան միանամ։
Եւ արիւնուշտ բռնաւորը չըպարծի,
Թէ դրժող եմ ընկերական ես ուխտի.
Արդ նա երկու կեանքի գահիճ թող դառնայ,
Ուխտանըւէր լոկ թող սիրոյ հաւատայ»։

Արեգակը մայր է մտնում, և տես
Խաչը արդէն նշմարում է նա կանգնած,
Նորա շուրջն էլ խուռն ամբոխը բերանբաց—
Բարեկամին բարձրացնում են խաչի վրայ.
Պատառում է խուժանը նա շրջակայ
Եւ որոտում. «Ի՛նձ, ո՜վ դահիճ, դու կախիր.
Այստեղ եմ ես, իմ պատանդիս արձակիր»։

Եւ բազմութիւնն ապշեց, մնաց հիացած.
Եւ գրկախառն ընկերներն են համբուրւում
Ու վշտից ու բերկրութիւնից արտասւում։
Արցունքներից և ամբոխի աչքն է թաց,
Արքային էլ անցքն յայտնեցին չըլսուած.
Մի մարդկային զգացմունք նորան համակեց,—
Իւր մօտ գալու նոցա հրաման արձակեց։

Եւ սքանչացած արքան նայում երկուսին
Ու ասում է. «Յաղթութիւնը դուք տարաք,
Դուք՝ որ հիմա իմ սրտին էլ տիրացաք.



Հաւատարմութիւնն անհա չէ՛ ցընորք սին,
Եւ թէ հաւան կըլինիք իմ աղերսին,
Ձեր մէջ նաև ինձ բարեկամ դուք առէք—
Երկու էիք, այժըմ լինինք մենք երեք»։



2.

## ՊՈԼԻԿՐԱՏԵՍԻ ՄԱՏԱՆԻՆ

Տանիքի վերայ նա բարձր կանգնած
Նայում էր, հոգին հրճուանքով լցուած,
Իրեն հպատակ շքեղ Սամոսին։
«Հընազանդ է ինձ այս ամէնը, տես.
Խոստովանիր, որ երջանիկ եմ ես»,—
Նա Եգիպտոսի ասաց արքային։

«Վայելում ես դու երկնից շնորհներ—
Ահա վաղեմի քո բաղդակիցներ
Քո գայիսոնի ուժից ընկճուեցան։
Բայց կայ վրիժառու մէկը տակաւին.
Եւ մինչ կենդանի է քո թշնամին,
Երջանիկ քեզ չի՛ ասիլ իմ բերան»։

Եւ դեռ չէր արքան իւր խօսքն աւարտած,
Ահա Միլետից հրեշտակն ուղարկուած
Եկաւ, աւետիք բերեց իշխանին.



«Թող, տէ՛ր, բուրբուքուի զոհերի ճենճեր,
Եւ դալարագեղ գուարթ դափնիներ
Հիւսուին փառաւոր պըսակ քո գլխին։

«Տիգահար արդէն ընկաւ թշնամիդ.
Հաղորդում է այս լուրն ուրախառիթ
Պոլիդորն ազնիւ, զօրավարըդ քաջ»։
Ասում է, բանում նա մի սև անօթ,—
Եւ արիւնաթաթախ գըլուխը ծանօթ
Սոսկալով տեսան նրանք իրանց առաջ։

Եւ սարսուռ զգաց, նահանջեց արքան.
«Բայց մի՛ հաւատար դու երջանկութեան»,—
Մտահոգ ասաց իւր բարեկամին.
«Հարուստ նաւերիդ—այդ մի՛ մոռանայ—
Բաղդըն է լողում նենգ ալեաց վերայ.
Կը փշրէ նոցա փոթորիկն ուժգին»։

Եւ հազիւ թէ նա իւր խօսքն աւարտեց,
Մի ուրախ գանչիւն նորան ընդհատեց,
Որ ծովեզերքից հասաւ թնդալով.
Ծանրացած գանձով օտար աշխարհի
Դառնում են ահա երկիրն հայրենի
Նաւերն՝ իբր անտառ խիտ խիտ կայմերով։

Ապշեցաւ մընաց ու ասաց արքան.
«Յաջողում է քեզ այսօր ամէն բան.
Բայց ըզգուշացի՛ր յեղյեղուկ բաղդից—

Ահա կրետացւոց գնդեր զինավառ
Պատրաստում են արդ վրտանգ քեզ համար.
Արդէն հեռու չեն նոքա այս ափից»։

Եւ խօսքը բերնից դեռ նոր դուրս եկած՝
Տեսան նաւերի դրօշները պարզած.
«Յաղթութի՜ւն»,—հազար ձայներ գոչեցին—
«Այլ ևս թշնամու չըկան արհաւիրք.
Կրետացիներին ցրուեց փոթորիկ,
Եւ հասաւ վախճան գոռ պատերազմին»։

Սարսափով լսեց հիւրն այս աւետիք.
«Իրա՛ւ, պիտի քեզ ասեմ երջանիկ։
Վախում եմ սակայն ես կեանքիդ համար.
Աստուածոց նախանձն ահռելի է միշտ,
Եւ ուրախութիւն ոչ երբէք անվիշտ
Հողածնի բաժին տեսել է աշխարհ։

«Յաջողում էր միշտ ինձ ևս ամէն բան.
Բոլոր գործերումս ինձ միշտ անբաժան
Հովանաւոր էր շընորհն երկնային։
Սակայն ունէի ժառանգ սիրասուն—
Ես տեսայ նորա մահն անագորոյն.
Պարտքըս հատուցի իմ ճակատագրին։

«Արդ ազատ լինել թէ կամիս ցաւից,
Աղաչի՛ր անմահ դու աստուածներից
Շընորհել և վիշտ ընկեր քո բաղդին.



Ես դեռ չեմ տեսել, որ մէկի վերան
Միշտ լիաձեռըն մինչև իւր վախճանն
Աստուածներն ուրախ պարգև թափէին։

«Եւ թէ չէ լսում Աստուած քո խնդիր,
Դու բարեկամիդ խրրատին միտ դի՛ր.
Ինքըդ քո գլխին կոչի՛ր դու փորձանք,
Եւ գանձերիդ մէջ եթէ պատուական,
Սրտիդ սիրելի դու ունիս մի բան,
Ձգի՛ր, թո՛ղ տանի այս ծովի յորձանք»։

Եւ Պոլիկրատէս սոսկալով ասաց.
«Իմ այս մատանին կղզում մթերուած
Բոլոր գանձերիցս է ինձ սիրելի.
Կամիմ այս զոհել ես աստուածներին—
Թերևս հաշտ աչքով նայեն իմ բաղդին»։
Եւ ծովն է նետում զոհարն իւր մատի։

Դեռ նոր էր բացուել յաջորդ առաւօտ,
Մի ձկնորս մտաւ թագաւորի մօտ,
Եւ ուրախութիւն փայլում էր դէմքին.
«Տէ՛ր, այս ձուկն այսօր ընկաւ իմ ուռկան,
Չեմ բռնել դեռ մինն ես սորա նըման.
Այս ընծայ բերի քեզ, իմ իշխանին»։

Եւ երբ խոհարարն ձուկը կտորեց,
Թագաւորի մօտ ապշած նա շտապեց
Եւ խիստ զարմանքով գոչեց ու ասաց.

«Տէր, ահա տես քո սիրած մատանին,
Գըտայ նոր բերած ես ձկան փորին։
Ո՜հ, ինչ անսահման բաղդ է քեզ շնորհուած»։

Եւ հիւրը դարձաւ, սրտումն ահ ու դող.
«Էլ այստեղ», ասաց,—«մընալ չեմ կարող.
Այլ ևս բարեկամ դու չես ինձ համար—
Կորուստդ են խնդրում աստուածներն երկնից.
Փախչում եմ՝ քեզ հետ մեռնելու վտանգից»։
Եւ շուտ նաւ նստաւ, ընկաւ ճանապարհ։





3.

## ՏԵՆՉԱՆՔ

Ա՜խ, երանի՜ այս միգապատ
Խոր անդունդիցն ահռելի
Դուրս թռչելու ես մի ազատ
Ինձ ճանապարհ գտնէի։
Մշտականաչ սիրուն զգեստով
Ահա՛ այնտեղ բլուրներ.
Ա՜խ, թէ հուժկու ես թևերով
Սլանայի դէպի վեր։

Մի երկնային անդորրութեան
Լսում եմ արդ նըւագներ,
Քաղցր բուրմունք անուշ գարնան
Բերում են ինձ մեղմ հովեր։
Սաղարթի մէջ գեղաժպիտ
Ոսկի պտուղներ շողշողուն,
Եւ ծաղիկներ մշտափթիթ
Իմ հոգին են կախարդում։

Ո՜հ, ի՜նչ չքնաղ պիտի լինի
Անվերջ լուսոյ այն աշխարհ,
Եւ ի՜նչ անուշ ու սքանչելի
Այնտեղ օդը կենարար։
Բայց հեղեղատն իմ առաջին
Մռնչում է գայրոյթով․
Նորա ալիքը մոլեգին
Պատում են ինձ սարսափով։

Ահա՛ նաւակն այստեղ կանգնած,
Բայց, ա՜խ, չըկայ նաւավար . . .
Յառա՜ջ անահ ու անկասկած—
Նա շու՜նչ կ'առնէ քեզ համար։
Լոկ հաւատա՛ դու աներկմիտ,
Քա՛ջ դու, սիրտ ա՛ռ ու հոգի—
Հրաշքո՛վ կ'բացուի քո առաջիդ
Սիրուն աշխարհն հրաշալի։





## Հ Է Յ Ն Է Ի Ց

### 1.

* * *

Այս ի՞նչ երգ է հեշտագին
Թափանցում խորքն իմ հոգուն․
Հնչի՛ր, երգ դու գարնային,
Ձայնիկդ հասնէ թող հեռուն։

Հնչի՛ր, հասի՛ր այն տնակ,
Ուր ծաղկունք են բողբոջում․
Այնտեղ կ'լինի իմ հոգեակ՝
Կըտաս նորան իմ ողջոյն։



2.

* * *

Իմ արցունքից բուսնում են
Անուշաբոյր շատ ծաղիկ.
Հառաչներըս դառնում են
Սոխակների դայլայլիկ։

Սիրէ՛ր դու ինձ—քեզ պարգև
Տամ, իմ հոգեա՛կ, ծաղիկներ.
Պատուհանիդ առաջև
Անուշ երգեն սոխակներ։





3.

## Ա Ս Ր Ա

Ամենայն օր իրիկուան դէմ
Զքնաղ դուստրը Թագաւորի
Շատրուանի մօտն է գնում,
Որից ջուր է ցայտում վճիտ։

Մատաղ ըստրուկն ամենայն օր
Շատրուանի մօտն է լինում,
Որից ջուր է ցայտում վճիտ.
Ու թօշնում է նա օրէ ցօր։

Մի երեկոյ դիմեց նորան
Եւ ըշտապով կոյսը ասաց.
«Ես անունըդ կ'ուզեմ գիտնալ,
Քո հայրենիքն ու քո ծագում»։

Եւ ստրուկն ասաց. «Մոհամմէդ է
Իմ անունը, Եմենցի եմ
Եւ սերուած եմ Ասրա ցեղից,
Որոնք սիրուց մեռանում են»։



## Ա. ՊԵՏԵՕՖՖԻԻՑ

Ես դուրս եմ գալիս դաշտը ամայի—
Չը կայ մի ծաղիկ, զարդարէ նորան.
Չը կայ և մի ոստ, որից սոխակի
Մեղեդին հնչէր քնքոյշ, քաղցրաձայն։
Խաւար է գիշեր, երկնակամարում
Չէ ցոլում ոչ մի լուսավառ աստղիկ—
Այսպէս ժամանակ, ի՞նչպէս է լինում,
Որ միտս ես ընկնում, նազելի աղջիկ։

Դու միտս ես ընկնում, և ամենայն բան
Փոխւում է այստեղ. պայծառ է գիշեր,
Եւ ճանապարհիս բացուած են վարդեր,
Երգում է այնտեղ սոխակն աննման.
Առաջիս դաշտն է բիւր ծաղիկներով,
Երկինքն էլ վառ է փայլուն աստղերով։





## ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ԵՐԳԸ

(Ա. Կամպիոնիից)

Անտառներում քաղցած գայլեր
Թափառում են ոռնալով,
Թափառում են քաղցած գայլեր
Զոհ են պտրում ոռնալով։
Քա՛ջ հովիւներ, արթուն կացէք—
Ձեր հօտերը կը չնչեն.
Մօտ են նոքա, արթուն կացէք,
Քաջ հովիւներ, պատրաստւէք։

Այս օտարներն՝ ո՛վ են նոքա,
Ի՞նչ են ուզում մեզանից.
Փայլեցնում են զէնք ու զրահ,
Խօսք են ասում սպառնալից։
Մեր պատիւն ու ազատութիւն
Խլել են ուզում մեզանից,—
Ահա թէ ի՛նչ խօսք է լսւում
Հռովմայ կայսեր բերանից։

Մեր կորովի քա՜ջ պատանիք,
Մեր նազելի՛ աղջիկներ,
Նորան ծառա՛յ պիտի լինիք,
Նորա կնոջ նաժիշտներ . . .
Մեր հայրենեաց ազատութեան
Ծառը չուզեց խոնարհել,
Եւ կատաղած՝ նոքա եկան,
Կամենում են այն կտրել։

Դո՜ւրս այստեղից, դո՜ւրս, թշնամիք.
Էլ ձեզանից ահ չունենք.
Կորչելու չէ մեր հայրենիք,
Եղբա՛յր դարձանք՝ հզօր ենք։
Մեր թշնամին՝ երկաթապատ,
Իսկ մենք մերկ ենք բնաւին,
Բայց կը փշրենք մենք կուռ երկաթ,
Չի դիմանալ մեր ուժին։

Ապառաժներ կը պատռենք
Եւ անառիկ լեռներից
Նորա գլխին մենք կը թափենք,
Կը հալածենք մեր երկրից . . .
Տեսէք, եղբա՛րք, լուսին ցոլաց
Յստակ, կապոյտ երկնքում.
Ազատութի՛ւն սուրբ հայրենեաց
Մաղթենք արդ մեր աղօթքում։





## ԳԵՐԻ ԱՐԱԳԻԼԸ

(Արաճիից)

Գերի արագիլն, ինչպէս բանտարկուած,
Բարձր պարսպի յետեւն է փակուած.
Կ՚ուզէր նա թռչել ու անցնել ծովեր,
Բայց, ափսո՛ս, խեղճի խուզած են թեւեր։

Եւ ըզգում է նա իւր անզօր վիճակ
Ու պահում գլուխը թեւերի տակ.
Կ՚ուզէր մտիկ տալ, բայց, աւա՜ղ, ինչի՞ն—
Բարձր պատերն են կանգնած առաջին։

Կարող է տեսնել նա երկնակամար
Իւր մութ, նեղ բանտից, բայց ինչո՞ւ համար...
Այնտեղ թռչում է ազատ կարաւան,
Ինքը՝ մատնուած դառըն գերութեան։

Եւ նա անհամբեր սպասում է վշտով,
Որ մէջքին բուսնին թեւերը շուտով.
Ո՜հ, այն ժամանակ չար գերութիւնից
Կը թռչէ ազատ աշխարհ լուսալից։

Ահա ցրտաշունչ աշունն է փչում․
Արագիլները տաք տեղ են թռչում․
Թշուառ, ինչպէս սորուկ, նա անհամարձակ,
Վշտագին ու որբ, շրջում է մենակ։

Լսում է յանկարծ վերից կռնչիւն․
Այդ նորան ծանօթ կռունկների է չուն . . .
Ականջ է դնում չարատանջ գերին
Ազատ երամի ուրախ երգերին։

Կամենում է նա նորից փորձ փորձել,
Խուզած թևերը բարձր տարածել․
Բայց այլոց նման, աւա՜ղ, նա ազատ
Չէ կարող սլանալ երկիրն հարազատ։

Անբաղդ արագիլ, խեղճ կալանաւոր,
Էլ այն յաղթական դու չես թևաւոր․
Թէ զօրանան էլ թևերդ ուժգին,
Զոհ պիտի լինիս անգութ դանակին։





## ԵՐԳ

(Բառի Կոռնուէլից)

Թող երգը անուշ հնչէ հեշտագին,
Ինչպէս խոխոջը վճիտ առուակի,
Թող յիշեցնէ մարդկային ազգին
Սիրելի պատկերն անցած օրերի։

Վեհ ձայնը երգչի թող դնէ վախճան
Մեր դառն սուգին, ստոր կրքերին․
Թող նորա երգը ազգասիրական
Ներշնչէ աշխոյժ, եռանդ մեր սրտին։

Ինչ մեզ յուզում է՝ թող այն ամենայն,—
Եւ ծիծաղ, և լաց, հանգիստ և թախիծ,
Եւ ուրախութիւն, և վիշտը մարդկան,—
Թող մասն ունենան այն հզօր երգից։

Թող զարթեցնէ նա միտքը քնէած,
Թոյլերին ոյժ տայ քաջերին ոգի,
Եւ պարգևատրէ որդոցն հայրենեաց
Փառքովը իրանց արդար գործերի։



## ՄՆԱՍ ԲԱՐԵՒ

(Տեննիսընից)

Պաղպաջուն առուակ, սահիր դէպի ծով,
Հանդարտ գլորիր ալիքըդ վճիտ.
Էլ չեմ գալ երբէք խռոված հոգով
Ես այցելութեան սիրուն ափերիդ։

Սահիր մարգերով և հովիտներով,
Դարձիր, սիրելի՛, յորդառատ մի գետ.
Էլ չես տեսնելու ինձ յուզուած սրտով,—
Ո՛չ, մնաս բարև, ընկեր իմ, յաւէտ։

Վերադ խոնարհած կ՚ողբայ ուռենին,
Կը լսուի այստեղ շրշիւնը բարդու,
Մեղուն կը ճախրէ քո կանաչ ափին.
Բայց դու ինձ երբէք էլ չես տեսնելու։

Ոսկեվառ շողեր գարնան արևի
Ալիքներիդ հետ ուրախ կըխաղան,
Լուսինը քեզ հաշտ գուցէ դեռ ժպտի,—
Բայց էլ չես տեսնիլ դու ինձ յաւիտեան։





## Զ. ԼԷՕՊԱՐԴԻԻՑ

### 1.

* * *

Ո՛հ, կանայք, ի՞նչեր դուք չէիք անի,
Եթէ կամէիք, հայրենեաց համար . . .
Երկինքը վառեց այդ անպարտելի
Զօրութեան բոցը ձեր աչքում պայծառ։

Ձեր առաջ պողպատ բնաւ չէ շառաչում.
Ձեզ համար մա՛րտի պարզուում են դրօշներ,
Պատանին էլ է առաւել վառուում
Եւ աւելի ջերմ են աղօթքի խօսքեր։

Այն խաղաղ պահուն, երբ իւր բարձունքից
Ալիքների վրայ արևն է իջնում,
Ազատ միտքն ըստրուկ ձեզ հարկ է տալիս
Եւ իշխանութիւն ձեզ է հնազանդուում։

Բայց ի՞նչ էիք դուք զարթեցնում մեր մէջ,
Պսակ էիք դնում դուք ո՞ւմ ճակատին.
Եւ դուք չէ՞իք, որ հանգցրիք անշէջ
Սրբազան ճըրագ մեր մաքուր սրտին։

Ո՞վ խլեց ծաղիկ մանուկ ցնորքների,
Ո՞վ մեզ ներշնչեց այն չնչին կրքեր,
Ո՞վ քընացրեց այն միտքը արի,
Որ պահում էր սուրբ աւանդութիւններ։

Կարող չենք առնել և հաստ սուսեր,
Որով մարտնչում էին մեր նախնիք . . .
Հայրենի երկրին ո՞վ բերեց աւեր.
Ասացէք, կանայք, միթէ դուք չէիք։





2.

* * *

Սիրոյ ցընորքներ, վսեմ երազներ . . .
Նոքա հոյակապ գործի են պատճառ.
Եւ գեղաժպիտ կուսի հրապոյրներ
Տալիս են նոցա միշտ կեանք ծաղկավառ։

Բայց և նա ընաւ սէր չէ ճանաչում,
Ում սիրտը երկչոտ մնում է քընած,
Երբ ահեղ մըրկից երկինքն է գոչում
Եւ դիզանում են ալիք կատաղած . . .

Երբ ամպերի մէջ կորած լեռներին
Զարկում են ուժգին հըրեղէն շանթեր,
Միայն խանդավառ ազատ աչերին
Պատկերանում է ցընորք անվեհեր։

Ո՛վ կանայք, ով որ սորոգութեամբ
Ծունկ է խոնարհում չար բաղդի առաջ,
Ով որ լռում է, լարուկ զգացմամբ,
Երբ հայրենիքի բաժինն է հառաչ,

Ով երկչոտութեամբ փախչում է դաշտից,
Ուր որ պողպատի ցոլում են սրեր,
Եւ չուզէ զրկուիլ անփառք հանգստից,—
Ո՛հ, նա չգիտէ սիրել ձեզ, կոյսեր։

Երբ նա ձեզ մօտ գայ՝ աղերս շրթունքին,
Հեռացէք դուք լուռ արհամարհանքով.
Թուլամորթ, ըստոր, երկչոտ ստրուկներին
Դուք մի՛ պսակէք սիրոյ պսակով։





3.

## ԱՆՀՈՒՆԸ

Սիրել եմ միշտ այս բոլորակ
Եւ այս տունկեր, որ իմ աչքից
Խլում են հեռու կամարն երկնից։
Երբ նայում եմ նստած մենակ
Այս ամէնին, ես այն հեռուն
Եմ երազում, ուր լռութիւն
Ու քաղցր հանգիստ սպասում են ինձ,
Եւ աներկիւղ, և անթախիծ։
Բայց երբ քամուց տերևների
Շրշիւնն է ինձ մէկ էլ հասնում,
Այն լռութիւնն անխզելի
Մտքիս մէջ է պատկերանում։
Անհունի մէջ ես խորասոյզ
Դարերն այնժամ բերում եմ միտ,
Յիշում եմ և խռովայոյզ
Ապրողներին հիմա անմիտ։

Եւ իմ հոգին անվախճանի
Ծոցումն հալուում է ընկղմած.
Ո՜հ, թէ ինձ այս ովկիանի
Գիրկն ընդունէր համատարած . . .





## ՑԷՅՉԷԻՑ

Մի՛ ափսոսիր անցած օրերիդ,
Էլ մի՛ ցանկար դու դարձը նոցա.
Չըդառնանայ թող վշտից հոգիդ,
Թէ վաղեմի բաղդըդ միտըդ գայ:

Մի՛ ափսոսիր. յետ չես բերելու
Ինչ որ եղել, գնացել է արդէն.
Շուտով, շուտով, քո ճամբան հեռու
Ոտ դի՛ր, ընկե՛ր, կազմ ու սպառազէն:

Տեսնո՞ւմ ես ծովն առաջիդ յուզուած.
Օ՜ն, շուտ յառա՛ջ. նաւակդ է սպասում . . .
Վա՛յ և նոցա, որ կեանքին անցած
Վհատ հոգով նզովք են ասում:

Իսկ դու, ընկե՛ր, ազատ, համարձակ
Դու ծովն ընկի՛ր ու մի՛ վախենայ.
Եւ եթէ քեզ ըսպառնան անյագ
Կատաղած ալիք, կռուի՛ր ու յուսա՛:

Եւ հաւատա՛—երկիրն աւետեաց
Նոքա մի օր քեզ պիտի հանեն.
Ազատութիւն ու սէրդ երազած
Այնտեղ բաժին քեզ պիտի լինեն։

Ինչ որ գարնանդ անցած օրերին
Կորցրել ես դու, տառապեա՛լ եղբայր,
Բոլորն այնտեղ կը գտնես կրկին,
Իմ յուսահատ ընկեր վշտահար։

Մի՛ ափսոսիր ուրեմն անցեալիդ,
Էլ մի՛ ցանկար դու դարձը նորա.
Չըդառնանայ թող վշտից հոգիդ,
Թէ վաղեմի բաղձըդ միտըդ գայ։



# ՑԱՆԿ

## I.

II.

